Սիրելի երեխանե՛ր, Ձեզանից շատերը վերջերս Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի Պետական թատրոնում դիտեցին կոմպոզիտոր Բ. Սակկիլարիի «Մոյդոդիր» մանկական բալետը՝ Ա. Ղարիբյանի բեմադրությամբ: Բալետը աչքի է ընկնում մանկական խանդավառությամբ, հեքիաթային, կախարդիչ գույներով, հարուստ, գեղեցիկ պատկերներով: Գլխավոր հերոսը փնթի, անկարգ և չարաճճի Ստյոպան է, որի դերը հաջողությամբ են կատարում շնորհալի երիտասարդ մենակատարներ՝ Ա. Անդրեասյանն ու Ն. Մեհրաբյանը:

Շտապեցեք բոլորդ տեսնել այդ հետաքրքիր բալետը:






# ՄՈՅԴՈԴԻՐ

ՆԵԼԼԻ ՍԱԴՈՅԱՆ

Նունեն շատ էր սիրում գիրք կարդալ: Նա հաճախ ամենայն լրջությամբ ասում էր.

— Ուզում եմ կարդալ,— վերցնում էր գիրքը և քաշվում բազմոցի մի անկյունը: Այն ժամանակ նույնիսկ, երբ Աշոտը կանչում էր նրան խաղալու, Նունեն մերժում էր.

— Չե՞ս տեսնում, կարդում եմ:

Բայց իսկականից կարդալ, այնպես ինչպես մեծերն են կարդում, նա դեռ չէր կարող: Դե նա նույնիսկ բոլոր տառերը չէր ճանաչում: Ա՛յ, կգնա դպրոց, այնտեղ կսովորի: Բայց այնուամենայնիվ նա կարդում էր: Իսկ ինչպե՞ս: Շատ հասարակ: Այնպես, ինչպես բոլոր փոքրիկները, մատիկը շարժում էր տողերի վրայով և անգիր արտասանում բանաստեղծությունները:

Սիրած գրքեր նա շատ ուներ, բայց բոլորից շատ սիրում էր նոր գրքերը, բոլորովին նորերը, որ բերում էր Աշոտը: Վերադառնալով դպրոցից, Աշոտը հարևան կրպակից ընտրում էր քրոջ համար մի լավ գիրք:

— Նունե՛,— ասում էր նա,— արի կարդանք:

Իսկ Նունեին հենց այդ էլ հարկավոր էր: Անմիջապես տեղավորվում էր եղբոր կողքին և ամբողջությամբ լսողություն դառնում: Նա իր սովորության համաձայն խնդրում էր, որպեսզի եղբայրը

digitised by A.R.A.R.@

ՀՈԿՏԵՄԲԵՐ
№ 10 1962 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

գիրքը մի քանի անգամ կարդա: Իսկ Աշոտը նրան չէր մերժում, որովհետև ինքը դեռ այնքան էլ մեծ չէր և քրոջ գրքերը նրան էլ էին հետաքրքրում:

Մի օր Աշոտը դպրոցից տուն եկավ առանձնապես զվարթ տրամադրությամբ, ուրախ թռչկոտելով մտավ սենյակ և, տեսնելով քրոջը, սկսեց թափահարել ինչ-որ սպիտակ բան: «Թղթի կտոր է»—մտածեց Նունեն, բայց այնուամենայնիվ հարցրեց.

— Դա ի՞նչ է:

— Գիրք:

— Ճիշտ չի, այդպիսի գիրք չի լինում:

— Դե սա էլ սովորական գիրք չէ, կենդանի գիրք է, հասկանու՞մ ես:

— Կենդանի՞,—կասկածանքով հարցրեց աղջիկը,—դե ցույց տուր,—և ձեռքը երկարեց: Իսկ Աշոտը սկսեց տանջել քրոջը, ստիպեց սենյակներով մեկ վազել իր հետևից, մտնել սեղանի տակ, բարձրանալ աթոռի վրա: Բայց որքան մեծ եղավ Նունեի հիասթափությունը, երբ նա վերջապես խլեց «գիրքը»: Դրանք երկու թղթի փոքրիկ կտորներ էին: Նունեն հազիվ զսպեց արցունքները:

— Խաբա՛ն, դեռ չի էլ ամաչում, ասում է «կենդանի գիրք»: Գրքերը բոլորովին էլ այսպես չեն լինում:

— Չէ՛, ազնիվ խոսք, ճիշտ եմ ասում: Ա՛յ, սպասիր երկու օր, կտեսնես: Իսկ սրանք տոմսեր են:

Նունեն սպասեց թերահավատորեն, բայց թաքնված հետաքրքրությամբ: Իսկ երկու օր հետո առավոտվանից վազեց եղբոր մոտ:

— Դե, ու՞ր է քո կենդանի գիրքը, ցույց տուր:

— Այ, կնախաճաշենք և կգնանք:

— Գիրքը պետք է նայե՞նք:

— Այո՛:

Աշոտը չէր խաբել: Երբ նախաճաշեցին, նա բռնեց քրոջ ձեռքը:

— Գնա՛նք:

Ճանապարհին նա շարունակ կրկնում էր.

— Գիրքը, երևի, շատ հետաքրքիր կլինի, այնտեղ կոկորդիլոս էլ կա:

— Կենդանի՞, իսկակա՞ն, հա՞:

— Կենդանի, անպայման, բայց իսկակա՞ն կլինի նա, թե՞ ոչ, չգիտեմ: Դժվար թե իսկական:

Նունեն այդ չհասկացավ, բայց ծիծաղեց:

Աշոտը նրան բերեց մի մեծ շենքի մոտ, որը շրջապատված էր հիանալի կանաչ պարտեզով: Ինչ հաճույքով ինքը այդտեղ կվազվզեր: Բայց եղբայրը առաջ գնաց, անցավ ընդարձակ հրապարակով, որտեղ դրված էին երկու մեծ արձան: Վերջապես նրանք ծանր դռների միջով մտան բարձր շենքը: Նունեն շարունակ շուրջն էր նայում և չէր հասկանում, թե իրենք որտեղ են:

Առջևում լայն աստիճաններն էին, որոնց վրա փռված էին գորգեր, վերևում երևում էին պատշգամբներ, ամենուրեք կանգնած էին արձաններ և էլի ինչ-որ փայլուն առարկաներ, որոնց վրա գեղեցիկ նկարներ կային՝ անտառ, առվակ, երեխաներ: Նունեն ցանկանում էր կանգ առնել, որպեսզի լավ նայի, բայց եղբայրը նրան տարավ մի մեծ կիսաշրջանաձև սենյակ: Առաջին բանը, որ նկատեց Նունեն, դա չտեսնված մեծ չափսի, առաստաղից մինչև գետին հասնող վարագույրներն էին: Հետո


19861



նա նկատեց, որ այդ մեծ դահլիճը կարծես ամբողջապես աստիճաններից է բաղկացած, որոնց վրա դրված են գեղեցիկ, թավշապատ բազմոցներ:

Աշոտը նստեցրեց Նունեին այդ աթոռներից մեկի վրա և ասաց.

— Շուտով կբացվի կենդանի գիրքը: Եվ մենք գիտե՞ս ինչ կտեսնենք: Եթե գտնես, ուրեմն ապրես, խելոք աղջիկ ես:

Նունեի աչիկները հետաքրքրությունից փայլեցին.

digitised by A.R.A.R.@



բայց երբ սկսեցին ռանգչել դահլիճի լույսերը, նա հանկարծ խորամանկորեն ժպտալով՝ ասաց եղբորը.

— Գրքերը մութ տեղը չեն կարդում, խափլան։ Կարծում ես չգիտե՞մ, որ սա թատրոն է, ինչպես տիկնիկայինը, բայց ավելի մեծ է։

Այդ ժամանակ հանկարծ սկսվեց երաժշտությունը։ Նունեն ականջները սրեց։ Երաժշտության ձայները գալիս էին առջևից, կարծես վարագույրի հետևից, այն, այնտեղ ցածրում նստած էին մարդիկ և նվագում էին տարբեր երաժշտական գործիքների վրա։

— Դա նվագախումբն է,— բացատրեց Նունեին եղբայրը։ Հանկարծ վարագույրները մի կողմ շարժվեցին և բեմը բացվեց։

«Ինչ մեծ է՜,—մտածեց աղջիկը,—տիկնիկներն էլ երևի մեծ կլինեն»։

Բայց տիկնիկները այդպես էլ չերևացին։ Նրանց փոխարեն բեմ դուրս եկավ մի տղա։ Իսկույն երևում էր, որ նա չարաճճի է և փնթի։ Հետո բեմում մի աղջիկ երևաց, նրա հետևից դուրս եկան շատ ծիծաղելի զինվորներ՝ ձեռքերին խոզանակներ և ցախավել։ Նունեն անհամբերությամբ սպասում էր, թե ինչ կասեն նրանք, բայց ոչ ոք չէր խոսում, միայն պարում էին։ Շատ հետաքրքիր էր և մի քիչ էլ ծիծաղելի։

— Ախր,—զարմացած հարցրեց նա,—սրանք ի՞նչ են, տիկնիկնե՞ր են։

— Ո՛չ, տիկնիկներ չեն, այլ կենդանի մարդիկ։ Այստեղ ամեն ինչ պարի միջոցով է կատարվում։ Սա բալետ է, հասկանու՞մ ես։

Բալետ։ Այդ բառը Նունեն առաջ էլ էր լսել, բայց չգիտեր, որ այսքան հիանալի բան է բալետը։

Իսկ բեմի վրա շատ հետաքրքիր բաներ էին կատարվում։

Առավոտ է։ Չարաճճի տղան քնած է։ Նույնիսկ հիմա էլ երևում է, որ նա փնթի է։ Հագուստները թափթփված են որտեղ պատահի, մի կոշիկը սենյակի մեջտեղում է ընկած, իսկ մյուսը՝ հայտնի չէ, թե որտեղ, վերմակը վրայից մի կողմ է գցել, իսկ ինքը պառկած է շատ տգեղ դիրքով։

Տատիկը նրան արթնացնում է, իսկ նա տեղից չի շարժվում։ Եկավ քույրիկը, վզկապը կապած, պայուսակը ձեռքին, կոկիկ հագնված։ «Վե՛ր կաց,— ասում է,— դպրոց գնալու ժամանակ է»։ Իսկ տղան չի լսում։ Դուրս եկավ արևը, ուրախ մտավ սենյակ և իր չարաճճի ճառագայթները գցեց ուղղակի տղայի աչքերին, որպեսզի նա շուտ արթնանա։ Բայց անկարգ տղան վեր թռավ տեղից, վերցրեց պարսատիկը և քարով կրակեց ուղիղ արևի վրա։ Հոնքերը կիտեց արևը, բարկացավ և դադարեց ժպտալուց։ Իսկ տղան նորից պառկեց՝ քնելու և գլուխն էլ բարձով ծածկեց։

Այն ժամանակ գործի անցավ զարթեցուցիչը, մեծ, կենդանի ժամացույցը։ Նա ուներ ձեռքեր, ոտքեր, և անհանգիստ պարելով (չէ՞ որ ուշ էր արդեն), շատ ուժեղ և բարձր զանգահարեց։

Նունեն ուրախությունից բացականչեց.

— Այ, հիմա չար տղան կսթափվի։

Բայց տղան զայրացած վեր թռավ, ոտքերը խփեց գետնին, վերցրեց ժամացույցը, գցեց հատակին և բարձով ծածկեց, որպեսզի նրա ձայնը այլևս չլսվի։ Խեղճ ժամացույց։ Ինչպես էր Նունեն նրան խղճում։

Իսկ տղան ուղղակի սենյակում սկսեց ֆուտբոլ խաղալ։ Սկզբում թափով խփեց գնդակին, հետո կոշիկներին, և վերջապես խաղագնդակ դարձան գրքերն ու պայուսակը։

Բայց այստեղ հրաշք կատարվեց։ Բոլորը սկսեցին տղայից փախչել։ Բարձն ու վերմակը թև առան թռան, իսկ սավանը օդ բարձրացավ ինչպես օդապարիկ։

Նունեն ուրախությունից բարձր քրքջաց։ Եվ հանկարծ նա հիշեց ծանոթ ոտանավորը։



digitised by A.R.A.R.@

— Աշո՛տ, Աշո՛տ, ես գլխի ընկա, սա իսկական կենդանի հեքիաթ է կեղտոտ տղայի մասին, «Մոյդոդիրն» է, չէ՞։

Բայց Աշոտը չէր լսում քրոջը, նա ամբողջովին կլանված էր սքանչելի տեսարանով։ Իսկ բեմահարթակի վրա ահա թե ինչ էր կատարվում. մի մեծ գորգի գլուխ անցած՝ քայլում էր լվացարանների պետը, ինքը՝ հսկա Մոյդոդիրը։ Ատամի խոզանակները, սանրերը, սրբիչն ու սապոնը, ատամի փոշին՝ մի խոսքով Մոյդոդիրի ամբողջ զորքը ռազմաշունչ քայլերգի հնչյունների տակ մտավ չարաճճի տղայի սենյակը, որպեսզի նրան կարգի հրավիրի։ Բայց տղան չէր հանձնվում։ Ինչ աղմուկ-աղաղակ բարձրացա՜վ, ինչ խառնաշփոթությու՜ն։ Ինչե՜ր ասես, որ նա չարեց։

— Միևնույն է, միևնույն է, քեզ կբռնեն, — տեղում թռչկոտում էր Նունեն։ — Ա՛յ, այդպես, քեզ տեղն է։ Հիմա քեզ մի լավ կլվացնեն ու կմաքրեն։ Բայց բեմի վրա կեղտոտ, չարաճճի տղային չլվացրին, այլ պարզապես ծածկեցին վարագույրը։

— Ճիշտ չի, հեքիաթն այդպես չի վերջանում, — քիչ մնաց որ լաց լիներ Նունեն։

— Սպասի՛ր, շուտով կենդանի գրքի հաջորդ էջը կբացվի ու այն ժամանակ...

Եվ իրոք շուտով կրկին վարագույրը մի կողմ քաշվեց և ապշած երեխաների աչքերի առաջ բացվեց կախարդական տեսարան։

Մի ոչ մեծ, բայց իսկական ջրվեժի շուրջը հավաքվել էին կենդանի մեղուները։ Նրանք այնպես փոքրիկ էին, այնպես գեղեցիկ՝ դեղին և սև բծերով ծածկված։ Նրանց թևերը փայլփլում էին զանազան գույներով։ Մեղուները թռչկոտում էին, պտտվում և մի հիանալի պար էին պարում։ Նունեն նույնիսկ նկատեց, որ դրանք իսկական մեղուներ չեն, այլ երեխաներ՝ մեղուների նման հագնված։ Եվ ինչքան գեղեցիկ էին նրանք պարում։

Ահա և աղվեսը ջրի մոտ է քաշ տալիս համառ խշուկին, վա՜յ, ինչպես է նա համառում, չի ուզում գալ։ Ինչպես ծիծաղելի քացի-քացի է տալիս և ձայնը գլուխն է գցել։ Այստեղ է նաև գրքից ծանոթ կոկորդիլոսը, որ փքված քայլում է և կարգ ու կանոնին հետևում։ Կոկորդիլոսը այլևս զայրացած չէ չարաճճի տղայի վրա, որովհետև նա արդեն լվացվել է։ Ամենուրեք ջուր է, ծաղիկներ, շատ ու շատ ծաղիկներ, և բոլորը պար են գալիս։

Բայց ո՞վ է այն երկնագույն հագուստով գեղեցկուհին։ Եվ ինչպես մեղուները նրան սիրով շրջապատել են։

— Աշոտ, դա ո՞վ է։

— Այդ աղջիկը ջրերի թագուհին է։ Նայիր, բոլորը իրենց գովքն են անում ջրին։

Ջրերի թագուհին բոլորի հետ պարեց հիանալի մի պար, դա ջրի հաղթական պարն էր.

Ամենուրեք և ամեն տեղ
Փառք ջրերին մեր բյուրեղ։

Նունեն զգաց, որ կենդանի գիրքը շուտով պետք է փակվի։ Եվ իրոք, վարագույրը իջավ, ու ամբողջ դահլիճը, որը լցված էր ուրախ և աղմկոտ երեխաներով, ոգևորված ծափ տվեց։ Նունեն ևս սկսեց ծափահարել։ Նա շատ գոհ էր ներկայացումից։

*Նկ. ԿԱՐԷՆ ՄԱՐՈՒՍՅԱՆԻ*



digitised by A.R.A.R.@

# ՓՈՒՆՋԸ

ՄԱՐԻԱ ԱՋԱՄԻՐՅԱՆ

Նկ. ԱՇՈՏ ՄԵԼՔՈՆՅԱՆԻ

Ալիքվեց դահլիճը ծափահարությունների բռնկումից, ու հանկարծ ամեն ինչ մի պահ քարացավ, որպեսզի հետո նոր ուժով պայթի: Բեմի վրա երևաց ինքը հեղինակը՝ Սերգեյ Վասիլևիչ Ռախմանինովը: Բոլորը ոտքի կանգնեցին, շարունակելով ծափահարել, այս ու այն կողմից լսվում էին հրճվանքի և ուրախության բացականչություններ: Սերգեյ Վասիլևիչը մի փոքր անհամարձակ ժպտաց հասարակությանը և, մի պահ չիմանալով ինչ անել, նստեց դաշնամուրի մոտ, համերգին մասնակցող երգչուհիներից մեկին հայացքով խնդրեց բեմ. տիրեց խոր, սպասող լռություն: «Եղրևանի» — մեղմ բարիտոնով հայտարարեց նա, — կատարվում է առաջին անգամ»:

Ու շոյող, հոգեթով մեղեդին նվաճեց հանդիսականներին, համակելով նրանց քնքույշ թախիծի և կարոտի զգացումով:



Հ. Մ. ԳՅՈՒՐՋՅԱՆ Ռախմանինով

... Էլեկտրական ջահերը վաղուց մարել էին, բայց հասարակությունը չէր ցանկանում թողնել դահլիճը, իսկ դրսում, արտիստական մուտքի մոտ հավաքվել էին Ռախմանինովի ամենանաջերմ երկրպագուները՝ գիմնազիստներ, ուսանողներ: Ահա այդ պահին, հանկարծ բոլորի ուշադրությունը գրավեց ամբողջովին ներմակ հագած երիտասարդ մի աղջիկ: Լայնեզր գլխարկի վրայից իջնող թանձր քողը ծածկում էր նրա դեմքը, որի տակից հազիվ երևում էին խոշոր, թուխ աչքերը: Աղջիկը ձեռքին բռնել էր սպիտակ եղրևանու մի փունջ: Այնպիսի ջերմ նվիրվածություն կար աղջկա շարժումներում, նրա ողջ կեցվածքում, որ բոլորը ակամայից ճանապարհ տվին նրան: Անծանոթուհին անհամարձակ քայլերով մոտեցավ դռնապանին, մեկնեց նրան եղրևանու փունջը ու կերկերուն ձայնով ասաց. «Տվե՛ք, խնդրեմ, Սերգեյ Վասիլևիչին»: Եվ փութկոտ քայլերով, թեթև ու արագ հեռացավ: «Իսկ ո՞ւմ անունից պատիվ ունեմ...» — նրա հետևից, հանկարծ սթափվելով, բացականչեց դռնապանը: Աղջիկը շրջվեց, մեղմ ժպտաց, ցանկացավ ինչ-որ բան ասել, բայց այդ պահին բացվեց դուռը և Ռախմանինովի նիհար, բարձրահասակ ուրվանկարը գծագրվեց լուսավոր քառակուսու մեջ: Մեծ արտիստը հանկարծ կանգ առավ, և նրա թափանցող աչքերը քողի տակից բռնեցին աղջկա հայացքը: Նրանք մի պահ նայեցին միմյանց, ապա աղջիկը ուշքի եկավ և շտապով սուզվեց մթության մեջ, թողնելով սպիտակ եղրևանու բուրմունքը միայն: «Ո՞վ էր այդ աղջիկը» — վերցնելով ծաղկեփունջը, շշնջաց նա:

Անցան օրեր, ամիսներ: Եվ որտեղ էլ որ լիներ Ռախմանինովը, ինչպիսի հեռավոր երկրներ էլ որ շրջագայելիս լիներ, ամեն անգամ «Եղրևանի» ռոմանսը կատարելուց հետո, խորհրդավոր անծանոթ այդ աղջկանից ստանում էր սպիտակ եղրևանու փարթամ մի փունջ: Հարազատ, մտերիմ մարդու հաճելի մոտիկության զգացում էր ապրում Ռախմանինովը՝ վերցնելով թարմ ծաղկեփունջը: Նա չէ՞ր ցանկանում պարզել իր անծանոթ բարեկամուհու ով լինելը. այդպես ավելի լավ էր,

digitised by A.R.A.R.@

թերևս այդ էր պատճառը, որ լավ, բարի այդ աղջիկը մեծ տեղ էր գրավել երաժշտի խոհերում։

* * *

Սկզբում նրանց ծանոթությունը սկսվել էր սոսկ նամակագրությամբ։

«Re» ծածկանունով էր ստորագրել այդ աղջիկը իր առաջին նամակը։ Հետագայում նրանք անձամբ ծանոթացան միմյանց և երկու արվեստագետների միջև սկսվեց ջերմ բարեկամություն։ Շատ սահմանափակ էր մեծ երաժշտի մտերիմների թիվը, և Մարիետտա Շահինյանն իր ուրույն տեղն ուներ այդ փոքրիկ, բայց շատ նվիրական շրջանում։



Ռախմանինովը բարձր էր գնահատում իր բարեկամուհու կարծիքը, հաճախակի դիմում էր նրա օգնությանը, ռոմանսների և երգերի համար բանաստեղծություններ և տեքստեր էր խնդրում ժամանակակից ու կլասիկ գրողների ստեղծագործություններից։

Մարիետտա Շահինյանը սիրով էր կատարում Ռախմանինովի խնդրանքները, նա ուղարկում էր նրան նոր լույս տեսած գրքեր, նրա ուշադրությունը հրավիրում այս կամ այն ստեղծագործության վրա։ Բազմաթիվ ռոմանսներ և երգեր Ռախմանինովը գրել է Մարիետտա Շահինյանի ընտրությամբ կատարված բանաստեղծական տեքստերի վրա։ «Գիշերն ինձ մոտ, իմ այգում» հիանալի ռոմանսը Ռախմանինովը գրել է, օգտագործելով Ավ. Իսահակյանի բանաստեղծությունը, որը թարգմանել էր Ա. Բլոկը։ Այդ բանաստեղծությունը ևս նրան ուղարկել էր Մարիետտա Շահինյանը։ Նրանց բարեկամությունն այնքան ջերմ և նվիրական էր դարձել երկուսի համար էլ, որ հաճախ Ռախմանինովը գտնվելով հոգեկան խռովահույզ վիճակում (մի բան, որ նրա հետ հաճախակի էր պատահում), փնտրում էր Մարիետտա Շահինյանի ընկերակցությունը։ Վերջինս միշտ էլ կարողանում էր դրական ազդեցություն ունենալ մեծ երաժշտի վրա։ Նրանց միջև հաստատվել էր երկուսի համար էլ խիստ անհրաժեշտ ջերմ բարեկամական նամակագրական կապ, որը շարունակվեց երկար ժամանակ։

Նախիջևանում եղած ժամանակ Ռախմանինովը տեղեկանալով, որ այդտեղ է գտնվում նաև Մարիետտա Շահինյանը, այցելեց նրան։ Ռախմանինովը այդ օրը շատ հոռետես էր տրամադրված, նրան տանջում էր մահվան գաղափարը, շարունակ խոսում էր այդ մասին։ «Չի կարելի ապրել, եթե միևնույն է, պետք է մեռնել» — կրկնում էր նա,— «ինչպե՞ս կարելի է հաշտվել այն մտքի հետ, որ վերջ ի վերջո պետք է մահանալ»։ Այդ մտքերով տարված, Ռախմանինովն սկսել էր ուտել աղով բոված պիստակ, որը նա շատ էր սիրում։ Մարիետտա Շահինյանը գիտեր այդ և խորամանկ ժպտալով հետևում էր Ռախմանինովին։ Իսկ նա իր առաջն էր քաշել լի ափսեն և այնպես էր տարվել ուտելով, որ բոլորովին մոռացել էր իրեն անհանգստացնող մտքերի մասին։ Եվ հանկարծ ուշքի գալով՝ Ռախմանինովը ուրախ ծիծաղում է և բացականչում՝ «Պիստակից մահվան վախը ցընդեց։ Դուք չգիտե՞ք, թե ուր»։ Հրաժեշտ տալով Ռախմանինովին, Մարիետտա Շահինյանի մայրը նրան տվեց պիստակով լի մի մեծ փաթեթ, որպես մահվան վախից ազատագրվելու շատ լավ միջոց։



digitised by A.R.A.R.@




ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

(Հայաստանի ճարտարապետների միության նախագահ)

Սկսելով այս զրույցը պիտի հարցնեմ ձեզ, երեխաներ, եղե՞լ եք արդյոք Զվարթնոցում: «Եղե՛լ, եղե՛լ»—կպատասխանեք դուք միաձայն: Եվ դուք իրավացի եք: Ինչպե՞ս կարող էիք չտեսնել հայ ճարտարապետության այդ նշանավոր հուշարձանը, որը նույնիսկ ավերակ վիճակում՝ բեկորների նրբին ու բարձրարվեստ քանդակներով, համարձակ մտահղացմամբ այդքան դյութում, հիացմունք է պատճառում և վկայում իր դարաշրջանի ճարտարապետական-կառուցողական արվեստի բարձր մակարդակի մասին:

Իսկական ճարտարապետական գործը ավերակ վիճակում էլ գեղեցիկ է լինում: Ակամա հիշում ես այս խոսքերը, երբ քայլում ես Զվարթնոցի պատկառանք ներշնչող ավերակներում: Սիրտդ լցվում է խորին հարգանքով ու օրինական հպարտությամբ, և երախտագիտությամբ ես հիշում այն հանճարեղ ճարտարապետին ու քարտաշ վարպետներին, որոնք 1300 տարի առաջ (այո՛, այս տարի լրանում է Զվարթնոցի կառուցման 1300-ամյակը), ստեղծեցին այս չնաշխարհիկ կոթողը, 7-րդ դարի հայ ճարտարապետության պսակը:

## Մի քիչ պատմությունից

Հայ պատմիչներից շատերը հիացմունքով են պատմում Զվարթնոց տաճարի մասին: «Եվ կառուցեց եկեղեցին բարձր կառուցվածքով ու հրաշակերտ գեղեցկությամբ»—պատմում է Սեբեոսը: Նա տաճարի կառուցողն է համարում Ներսես Շինարար կաթողիկոսին, մոռանալով հիշատակել նաև իսկական կառուցողների՝ ճարտարապետի և մյուս վարպետների անունները: Ներսես կաթողիկոսը աշխատում էր ստեղծել հայ եկեղեցու նոր կենտրոն, որը մինչև այդ գտնվում էր Դվինում: Այդ նպատակի համար նա ընտրում է մի առապար վայր Վաղարշապատից (այժմյան Էջմիածնից) ոչ հեռու, կառուցել է տալիս տաճար ու նրան կից իր պալատը: Հետո նա տաճարն ու իր ապարանքը պարսպապատում է, բարեկարգում, ապահովում ջրով ու տնկում ծառեր:

Տաճարին նա Զվարթնոց անունն է տալիս, որն առաջացել է «զվարթուն» բառից: Իսկ «զվարթուն» նշանակում է արթուն հսկող, այսինքն՝ հրեշտակ: Ըստ ավանդության հայոց առաջին կաթողիկոս Գրիգորի երազում երևացել են զվարթունները, և

digitised by A.R.A.R.@

ատա նրանց պատերին էլ տաճարին տալիս են Զվարթնոց անունը:

Հայտնի է, որ տաճարի բացման արարողությանը ներկա է գտնվել բյուզանդական կայսր Կոստանդին 3-րդը: Պատմիչներից մեկի վկայությամբ, նա այնքան է հավանել տաճարը, որ նրա կառուցող ճարտարապետին որոշել է հետ վերցնել, որպեսզի Կոստանդնուպոլսում այդպիսի մի տաճար կառուցել տա, սակայն ճարտարապետը ճանապարհին վախճանվել է: Տաճարի կառուցումից հետո, Ներսես կաթողիկոսը, իսկ նրա ժամանակավոր բացակայության ընթացքում՝ նրան փոխարինող Անաստաս Ակոռեցին, շարունակում են ու ավարտում հարակից շենքերի շինարարությունը և ողջ տերիտորիայի բարեկարգման աշխատանքները: Այս է հավաստում պատմությունը Զվարթնոցի շինարարության: Տաճարը կործանվել է շատ վաղուց, հավանաբար 10-րդ դարում տեղի ունեցած երկրաշարժի ժամանակ: Դարերի ընթացքում նրա մնացորդները հետզհետե ծածկվել էին հողի հաստ շերտով և ոչ ոք չգիտեր նրա տեղը: Երևան հայտնաբերվեցին միայն մեր դարի սկզբում կատարված պեղումների շնորհիվ: Տաճարի առաջին ուսումնասիրությունը և նախկին ձևերի վերականգնության նախագծի համար մեծ աշխատանք են հայ ճարտարապետության նշանավոր Թորոս Թորամանյանին: Ոմանք կասկածի տակ դրին նրա վերականգնման ճշտությունը: Մեծ գիտնականի կարծիքը լիովին հաստատվեց, երբ երկու տարի առաջ, Անիի պեղումների ժամանակ հայտնաբերվեց Զվարթնոցի օրինակով Տրդատ ճարտարապետի կողմից 11-րդ դարի սկզբում կառուցված տաճարի մնացորդները, իսկ նրանց կողքին գտնվեց Գագիկ 1-ին թագավորի քանդակված արձանը՝ ձեռքին տաճարի մակետը, որն ունի ճիշտ և ճիշտ Թորամանյանի վերականգնության ձևը:

## Տաճարաց տաճարը

Հայաստանում նոր պաշտամունքի՝ քրիստոնեության ընդունման հետևանքով ծայր առավ եկեղեցական շենքերի շինարարությունը: Մշակվեցին տաճարների բազմազան տիպեր, մեկը մյուսից հետաքրքիր ու գեղեցիկ, սակայն դրանց բոլորի պսակը Զվարթնոց տաճարը հանդիսացավ:

Հատակագծում կլոր և ծավալով եռահարկ Զվարթնոցի տաճարը, լինելով հայկական տաճարային ճարտարապետության նոր տիպ, մինչ այդ կառուցված կենտրոնագմբեթ-խաչաձև տիպի եկեղեցիներից (Ավանի, Սիսիանի, Հռիփսիմեի, Մաստարայի և այլ տաճարներ) փոխ էր առել միայն նրանց ներքին խաչաձևությունը, որն այստեղ ներգծված էր ոչ թե ուղղանկյան, այլ՝ կլոր, դրսից բազմանիստ ձևի պատերի մեջ: Չորս հզոր մույթեր[1] այդ խաչի հիմքն էին կազմում: Նրա թևերն էին կազմում հատակագծում կիսաշրջանաձև դասավորված ու զամբյուղաքանդակ խոյակներով[2] պսակված վեցական սյուները: Խաչի միայն արևելյան թևն էր (որտեղ գտնվում էր եկեղեցու բեմը) տարբեր: Այստեղ սյուների փոխարեն էր կիսաշրջանաձև մի հաստ պատ՝ ծածկված գեղեցիկ խճանկարով: Երկրորդ հարկի ծանրությունը, բացի հիշատակված խաչի թևերից, իրենց վրա կրում էին չորս մույթերն ու նրանց հետևում տեղադրված մեկական սյուները՝ պսակված արծվաքանդակ խոյակներով: Տաճարի երրորդ հարկը իր գմբեթով հանգերձ հանգչում էր չորս մույթերն իրար միացնող կամարների վրա:

Ինչպես վկայում են պահպանված ճարտարապետական բեկորները, բացառիկ հարուստ ու գեղեցիկ էր հարդարված տաճարի արտաքին բազմանիստ պատը: Այստեղ կառուցողները ցույց են տվել իրենց ասեղնագործական տաղանդի ամբողջ ուժն ու կարողությունը, բարձր գեղարվեստական մշակման բարձր վարպետությունը: Դրա ապացույցը կարելի է տեսնել տաճարի յուրաքանչյուր մանրամասնում՝ արտաքին մույթերի ձևավորման, նիստերի անկյուններում տեղավորված սյուների խարիսխներում[3] ու խոյակներում կամ նրանց միացնող կամարաշեղերին[4] ու վերևի հարթությունները ծածկող հարուստ բարձրաքանդակներում, կամ պատուհանների նրբին պսակներում և այլն: Հայաստանի խաղողն ու նուռը և բուսական այլ մոտիվներ վարպետների ճարտար ձեռքով շունչ ու արյուն են ստացել տաճարի պատերի վրա: Վարպետները չեն մոռացել տաճարի պատերին դրոշմել նաև իրենց դիմաքանդակները, կրոնական հանդերձներով ու շինարարական գործիքները ձեռքերին: Այդ քանդակներից միայն մեկն է մակագրված «Յոհան» անունով, որը թերևս տաճարը հորինող ճարտարապետը լինի:

Բազմաստիճան պատվանդանի վրա դրված, եռահարկ, ուղղաձիգ առանցքի շուրջ կենտրոնացած տաճարն իր միասնական ծավալով ուրվագծվում էր Արարատի հավերժական գագաթների ֆոնի վրա, հնչելով որպես մի խոհական քարակերտ ու ներդաշնակ սիմֆոնիա:

---

1. Մույթերը սյունանման պատեր են, հատակագծում քառակուսի, ուղղանկյունի կամ խաչաձև:
2. Խոյակ — սյունը պսակող մաս, սյունագլուխ (կապիտել):
3. Խարիսխ կամ բազա — սյան ստորին մասը:
4. Կամարաշեղ — կամարի արտաքին երեսը պսակող ձևավոր կամ քանդակազարդ շրջանակ:



digitised by A.R.A.R.@

Զվարթնոց տաճարի ճարտարապետությունը հսկայական ազդեցություն ունեցավ ոչ միայն իր ժամանակի, այլև հետագա դարերի հայ ճարտարապետության վրա: Այդ ազդեցությունը թափանցեց նույնիսկ Հայաստանի սահմաններից դուրս:

## Հարակից շենքերը

Տաճարից դեպի հարավ-արևմուտք տեղավորված էր Ներսես 3-րդի պալատը՝ բաղկացած պաշտոնական ու բնակելի հարկաբաժիններից: Արևմտյան հարկաբաժնում երկու մեծ դահլիճներ են եղել իրենց օժանդակ սենյակներով: Կաթողիկոսի բնակարանը հյուսիսային կողմից կից էր դահլիճին:

Մյուս հարկաբաժինը հիմնականում հատկացված էր հոգևորականներին ու այլ սպասավորներին, որպես բնակարան: Այստեղ էին գտնվում նաև բաղնիքն ու պահեստական փոքր սենյակները: Չափազանց ուշագրավ է վերջերս պեղված գինու հնձանը՝ արտադրական շենքի մի հազվագյուտ նմուշ: Սա շինված էր պալատի մոտ, նրա հարավային կողմում և իրենից ներկայացնում էր մի երկար ու ընդարձակ դահլիճ՝ կենտրոնում տեղադրված լայն միջանցքով: Սրա երկու կողմերում տեղավորված էին քարակերտ մեծ (յուրաքանչյուրը 4000—5000 լիտր տարողությամբ) տակառներ, որոնց մեջ խաղողահյութը հոսում էր նրանց կից թեք ու սալարկված հատակների վրա խաղողը ճմլելուց հետո: Բոլոր տակառների տարողությունը միասին հասնում էր մինչև 25000 լիտրի: Այստեղից էլ, երեխաներ, կարելի է գաղափար կազմել, թե ինչպիսի մեծ տնտեսություն ուներ եկեղեցին:

Զվարթնոցի պալատի այս կոմպլեքսը, որ վաղ միջնադարի աշխարհիկ ճարտարապետության հետաքրքիր օրինակ է, ունի ընդհանուր գծեր նույն ժամանակաշրջանում կառուցված Դվինի ու Արուճի պալատների հետ, որոնց մնացորդները պեղվել ու բացվել են վերջին երկու տասնամյակների ընթացքում:

* *

Ինչպես ամեն մի պատմական հուշարձան, Զվարթնոցն էլ իր ժամանակի ծնունդ է: Նա հանդիսանում է շինարար հայ ժողովրդի ստեղծած բարձր մակարդակի մշակույթի փայլուն էջերից մեկը և նշանավոր ներդրում է ճարտարապետական կուլտուրայի համաշխարհային գանձարանում: Այդ պատճառով էլ աշխարհի ժողովուրդների ճարտարապետական ժառանգությանը նվիրված ամեն մի գրքում, ինչ լեզվով էլ որ նա գրված լինի, կարելի է հանդիպել Զվարթնոցին: Եվ քանի որ դա այդպես է, դուք էլ, սիրելի երեխաներ, հպարտ լինելով հանդերձ մեր հանճարեղ նախնիների ստեղծագործության համար, պիտի տեղյակ լինեք նրա պատմությանը, որպեսզի հասկանաք հայկական ավերակների «լեզուն»:



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@



Ե. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

ԱՐԱԳԱԾ

# ԱՌԱՋԻ՛Ն ՀԱՄԵՐԳԸ

ԿԻՐԻԼ ԳՐԻՎԵԿ

Լրացավ Պագանինիի 13 տարին...

Նրա ուսուցիչը, որը ճենովայում հայտնի մանկավարժ էր և թավջութակահար, մեծ հավատ ուներ իր աշակերտի արտակարգ տաղանդի նկատմամբ, բայց մինչև որ պատանին ջութակին լավ չտիրապետեր, թույլ չէր տա, որ նա հանդես գա հասարակության առաջ։

Մի անգամ, շատ դժվար կոմպոզիցիայի կատարումից հետո, Պագանինին սկսեց հանպատրաստից հորինել։ Ապշած ուսուցիչը միայն կարողացավ ասել.

—Դու արդեն բարձր տեխնիկա ունես, կարող ես հանդես գալ ինքնուրույն համերգով։

Ձնայած այդ գնահատականն անսպասելի չէր Պագանինիի համար, բայց նա անվճռական պատասխանեց.

—Բայց կարո՞ղ եմ արդյոք, ուսուցի՛չ։ Մեր քաղաքում ելույթ են ունեցել այնպիսի հայտնի ջութակահարներ...

—Դու պետք է հավատաս ինքդ քեզ և այդ դեպքում անպայման կկարողանաս։

—Իսկ կրե՞յցերը։ Ես այնպես անհանգստանում էի, երբ նվագում էի նրա առաջ։

—Կրեյցերը դյութված է քո երաժշտությամբ։ Նա ասաց, որ դու մեծ ջութակահար կդառնաս... Բայց, իհարկե, եթե դու առաջվա նման համառորեն աշխատես,—ավելացրեց ուսուցիչը։ —Ջութակը նման է այն արտին, որ պահանջում է անխոնջ աշխատանք։ Հակառակ դեպքում բերք չի տա։

Պագանինին պայծառացած բացականչեց.

—Ուսուցի՛չ, թույլ տվեք ինձ գնալ տուն և պատմել համերգի մասին։

Նա վազեց փողոցով, ձեռքին պահած առանց պատյանի ջութակը։



digitised by A.R.A.R.@

Իր ուսուցչի հովանավորությամբ Պագանինին երբեմն նվագում էր հայտնի ջենովացի Դի Նեգրոյի տանը, որտեղ հավաքվում էին նկարիչներ, դերասաններ, գրողներ: Նվագում էր նաև քաղաքային եկեղեցում:

«Լուրեր» լրագրում հայտնվեցին մի քանի բարյացակամ հոդվածներ փոքրիկ երաժշտի մասին:

Մի օր էլ մաեստրոն ասաց.

—Քաղաք են եկել հայտնի երգիչներ՝ Մարկեզին և Թերեզա Բերտինոտտին: Վաղը Դի Նեգրոյի մոտ դու կնվագես նրանց համար:

Հաջորդ օրը, լսելով փոքրիկ երաժշտին, Մարկեզին բոլորի առաջ գովեց նրան.

— Ինձ հիացրեց քո նրբագեղ ու թարմությամբ լի կատարումը: Դու մեծ արտիստ ես:

Տուն վերադառնալիս ուսուցիչն ասաց Պագանինիին.

—Ես ու Դի Նեգրոն խնդրեցինք Մարկեզիին և Բերտինոտտիին, որպեսզի դու մասնակցես նրանց համերգին: Նրանք համաձայնեցին: Պատրաստվի՛ր: Դա խիստ կարևոր քայլ է քո կյանքում:

Համերգի նախօրյակին Մարկեզին ցանկացավ իմանալ, թե ինչ է նվագելու Պագանինին:

—Դեռևս չեմ կարող ձեզ որևէ բան ասել,—պատասխանից խուսափեց Պագանինին,—հավանական է հանպատրաստից հորինեմ:

—Բայց հասարակությունը պետք է իմանա, թե ինչ ես դու նվագելու, այդպես է կարգը,—պնդեց Մարկեզին:

—Ստիպված մենք այդ կարգը կխախտենք,—անվրդով պատասխանեց փոքրիկ երաժիշտը:

Մեղմ ժպիտը, որ երևաց նրա աչքերի մեջ, աննկատելի չմնաց Մարկեզիից: Արտիստը, մտահոգված Պագանինիի վարքով, ափսոսաց, որ թույլ է տվել նրան մասնակցելու իրենց համերգին: Այնուամենայնիվ փոքրիկ երաժշտի անունը հայտնվեց աֆիշների վրա: Ջենովայի բնակիչները շատ էին հետաքրքրվում տաղանդավոր երեխայով:

Եվ ահա համերգը: Վերջապես նա հանդես կգա ջենովայի պահանջկոտ հասարակության առաջ:

Երեկոյան, չնայած հուլիսյան շոգերին, Ագոստինոյի թատրոնի մեծ դահլիճը լեփ-լեցուն էր: Առաջինը բեմի վրա երևաց Մարկեզին, որին հասարակությունը մեծ խանդավառությամբ դիմավորեց: Նրանից հետո փոքրիկ երաժշտի հերթն էր:



Վարագույրը բարձրացավ: Պագանինին դանդաղ, բայց հաստատուն առաջ շարժվեց: Հասարակությունը քարացավ: Հետո աղմուկ բարձրացավ, որը շուտով ամբողջ դահլիճը բռնեց: Ֆիզիկապես Պագանինին շատ անհամաչափ էր զարգացած. հսկայական գլուխ՝ երկար ու նիհար վզի վրա, ցցուն ականջներ, երկարավուն գունատ դեմք, մեծ, արծվային քիթ, երկար ձեռքեր՝ չոր մատներով, նիհար ոտքեր: Նիկոլոն ուրվականի նման կանգնած էր բեմին, ուշադրություն չդարձնելով դահլիճի սառը ընդունելությանը: Ջնայելով անգամ հասարակությանը, նա իր հայացքը դարձրեց ուսուցչի կողմը, որը ետնաբեմում կանգնած՝ ոգևորող ժպիտով նայում էր նրան: Զարմանալի վարպետությամբ նրա աղեղը ջութակից դուրս բերեց կախարդիչ հնչյուններ... թվում էր՝ արևոտ վաղ առավոտի ձայնեղ թռչունների խումբն է երգում, և ոչ թե ջութակը:

Անսպասելիորեն բռնկվեց «Կարմանյոլան»: Հաղթականորեն հնչեցին հեղափոխական երգի հնչյունները: Հասարակությունը զարմացած էր փոքրիկ ջենովացու համարձակությամբ: Նա չվախենալով նահանգապետի և քաղաքի բարձրաստիճան անձանց ներկայությունից՝ հպարտորեն նվագեց այդ խռովահույզ երգը:

— Կեցցե՛ս, կեցցե՛ս,— ձայնում էր դահլիճը:

Փա՛ռք Պագանինիին, փա՛ռք,— թնդում էին բացականչությունները:

*Թարգմ. Ա. ՄԻՆԱՍՅԱՆ*

# „ԱՆՔՈՒՆ ԳԻՇԵՐՆԵՐ ԵՄ ԱՆՑԿԱՑՐԵԼ..."

ՍՈՒՐԵՆ ՍԱՀԱԿՅԱՆ

*Մի անգամ Պոլսո խուլ թաղամասերից մեկում մի ջղուտ մարդ, քաթ ու քրտինք մտած, ոտքերը մինչև ծնկները ցեխի մեջ խրելով, աղյուս էր թափում և քթի տակ մռմռում էր.*

*Դու զով խնդրես, մայր իմ... ը... ը...*
*Անլաց... ը... ը... սրտիս լուրեր...*
*Ընդ աստեղոք ի՞նչ կա սիրուն*
*... ամա՜ն, ամա՜ն...*

*Աղյուսագործը մի տող այս երգից, մի բառ այնտեղից կցմցելով՝ երգում և աշխատում էր:*

*Եվրոպական սև կոստյում հագած մի պատկառելի մարդ ճեմելով բարձրանում էր փողոցն ի վեր և, լսելով ծանոթ երգի ելևէջները, հովանոցը իջեցրեց ու շանթահարվածի նման առաջացավ դեպի աղյուսագործը: Նա սկսեց ոտքի տակ տալ առաջին տողը, երկրորդը, երրորդը...*

*— Խնձթյա՛ր, մա՛րդ աստծո, այդ ի՞նչ կընես...— գոռաց աղյուսագործը:*

*— Կջարդեմ,— անվրդով պատասխանեց անծանոթը:*

*Աղյուսագործը սևեռուն հայացքով չափեց նրան և հանկարծ ճանաչեց մեծ բանաստեղծին:*

*— Պարոն Պեշիկթաշլյան, երբեք չէի սպասեր, որ դուն հոս գայիր և սանկ ջարդեիր տողերս, ինչու կընես, չէ՞ որ աշխատանք եմ թափեր, քրտինք:*

*Մեծ բանաստեղծ-դրամատուրգը զարմանքից ապշեց, կանգնեց և դարձավ դեպի արհեստավոր մարդը.*

*— Ա՜, ծանր կթվի... աշխատանք եք թափեր, քրտի՛նք... ես ալ անքուն գիշերներ եմ անցկացրել, մինչև գրեր եմ այդ երգերը... դուն ինչ իրավունքով կջարդես, մեկը կծեծես մյուսին... Չես գիտեր, ամոթ չէ, սորվի՛ր, նոր երգե...*





# Նոտայի շուռ տված թերթը

ՊԱՎԵԼ ՍՊԱՍՈՎ

— Ինչո՞վ դուք այսօր մեզ կզարմացնեք:

Այսպիսի հարցով դիմեց կոմս Ֆրիսին՝ նրա հրաշալի պալատը երաժշտական երեկոյի հրավիրված հյուրերից մեկը:

— Հարգելի պարոն,— պատասխանեց կոմսը,— այսօր ձեզ համար կնվագի Փարիզի հանճարեղ զավակ, վիրտուոզ-դաշնակահար և իմպրովիզատոր* պարոն Դանիել Շտեյբելտը:

Կոմս Ֆրիսը ցույց տվեց դեպի աջ, որտեղ դաշնամուրի առաջ, երաժիշտների մոտ, հյուրերը տեսան արդեն ոչ երիտասարդ, բարձրահասակ, գեղակազմ մի տղամարդու, որը խոնարհվում էր՝ արհեստական ժպիտը դեմքին քարացած:

Հյուրերն ավելանում էին: Ծառայապետը բարձրաձայն կանչում էր իշխանների, հունգարական բարձրաստիճան պաշտոնյաների անունները:

Սկսելու ժամանակը չէ՞ արդյոք,— հարցրեց կոմսուհին, երբ հյուրերի հոսանքը քչացավ:

— Դեռևս ոչ,— բարձրաձայն պատասխանեց կոմսը:

— Ես սպասում եմ մեր վիրտուոզին՝ հարգելի պարոն Բեթհովենին:

Լսվեցին քչփչոցներ: Պարոն կոմսը մտադրվել է մրցում անցկացնել: Կկարողանա՞ արդյոք «մեր» Բեթհովենը չափվել ֆրանսիացու հետ, որի փառքը թնդում է ողջ Եվրոպայում:

* Իմպրովիզատոր—հանպատրաստից հորինող



digitised by A.R.A.R.@

Լյուդվիգ վան Բեթհովենը կանգնած էր դռան մոտ, թաքնված հյուրերի թիկունքում։ Նրա տասնըյոթամյա աշակերտը՝ Ֆերդինանդ Ռիսը, զուր էր խնդրում ուսուցչին առաջ անցնել։ Նա ցանկանում էր միանալ այդ նորընտիր հասարակությանը, բայց Բեթհովենը տեղից չէր շարժվում։ Դանիել Շտեյբելտը նստեց դաշնամուրի առաջ, նրա բարակ մատները սահեցին ստեղների վրայով։ Ինչպես որ հայտարարված էր, դաշնակահարը «իմպրովիզացիա էր անում»։ Գրակալի վրա դրված էր նոտայի մի ոչ մեծ թերթ՝ հանրահայտ տիրոլյան երգի թեմայով։ Նա թեթև, երկու մատով նվագեց եղանակը և թերթը գցեց հատակին։

Սկսվեց իմպրովիզացիան։ Հենց միանգամից եղանակը մասնատվեց, յուրաքանչյուրում հնչեցին քմահաճ վարիացիաներ։

Բոլոր հյուրերը՝ բարձրաստիճան տիկնայք, կոմսերը, իշխանները, հիացմունքով էին լսում երաժշտին։ Առանձնապես գոհ էին տանտերերը, ուրախացած այն բանից, որ իրենց հյուրերը լսում են նշանավոր վիրտուոզին։ Շտեյբելտը մի ձեռքով երկարատև գեղգեղացնելով եղանակը, մյուսով վերստեղծեց մոտեցող փոթորիկ։ Աստծուն աղերսող և մոլորված ճանապարհորդներին ապաստարան



ցույց տվող զանգի անդադար ղողանջներից հասարակությունը պետք է հասկանար, որ փոթորիկը տեղի է ունենում լեռներում։ Եվ այս բոլորը զարգանում էր տիրոլյան ուրախ երգի հիման վրա։ Հենց նրա վրա էլ կառուցվեց հաջորդ՝ «Փոթորկից և ձյունակույտերից փրկվածները» սենտիմենտալ աղոթք-խմբերգությունը։

Բեթհովենը մռայլ կանգնած էր սյան մոտ։ Նրա համար պարզ էր ֆրանսիացու մակերեսային վիրտուոզությունը, նա զգում էր էժանագին էֆեկտների սեթևեթությունը, որը նախատեսված էր հըղփացած լսողներին «ցնցելու», նրանց կարեկցանքը արթնացնելու համար։ Փայլուն կերպով տիրապետելով դաշնամուրին, Բեթհովենը չէր կարող չորսալ դաշնակահարի կեղծությունը։ Դա բոլորովին էլ իմպրովիզացիա չէր։ Ողջ սրտառուչ ստեղծագործությունը փութաջանորեն անգիր էր արված։ Նման «վիրտուոզներին» Բեթհովենը արհամարում էր։ Անկատար արվեստը,

digitised by A.R.A.R.@

մակերեսային երաժշտությունը զայրացնում էր նրան։ Ոչ պակաս զայրույթ էին առաջացնում նաև նրանք, ովքեր «վիրտուոզին» խրախուսում էին գովեստներով։

Երբ նշանավոր երաժիշտը վերջացրեց իմպրովիզացիան, ազնվական հասարակությունը որոտընդոստ ծափահարեց։ Վերջապես բոլոր ներկաների հայացքները դարձան դեպի Բեթհովենը։

Հույս ունեմ, որ դուք մեզ կպատվե՛ք ձեր իմպրովիզացիայով,— ժպտաց Բեթհովենին կոմսուհի Ֆրիսը։

Հնչեցին ծափեր։

Կոմպոզիտորը լռում էր։ Մրցել այդ ժոնգլյորի հե՛տ...

Երաժիշտները պատրաստվում էին ծրագրի հետևյալ համարին։ Գրակալների վրա երևացին Լյուդվիգ Բեթհովենի նոր կլավիրային կվինտետի նոտաները։ Բայց հյուրերը չէին ուզում այն լսել։ Նրանք իմպրովիզացիա էին պահանջում։

Այն ժամանակ Բեթհովենը անցավ դահլիճ, մոտակա գրակալից հափշտակեց նոտայի թերթը և ցույց տվեց հասարակությանը, սա կլինի նրա թեման։ Հետո նա շուռ տվեց թերթը և այդպես էլ այն դրեց դաշնամուրի գրակալի վրա։

Ուշադրությամբ զննելով շուռ տված նոտաները, նա մի մատով նվագեց թեման։ Իհարկե, նոտաների այնպիսի կարգի դեպքում, երբ յուրաքանչյուր «մի» դարձել է «ֆա» և յուրաքանչյուր «լյա»՝ «դո», նվագած կտորը չունի ո՛չ երաժշտական, ո՛չ տրամաբանական կապ, ո՛չ մեղեդի, ո՛չ հարմոնիա։

Դա լսողությունը գրգռող հնչյունների ինչ-որ խառնուրդ էր, տոների անհավատալի խառնաշփոթություն։

Ազնվաբարո տիկնայք ու պարոնները տարակուսում էին։

Դա ի՞նչ է, ծաղրում են՞կ։ Բեթհովենի բարեկամները հայացքներ փոխանակեցին՝ մի՞թե իրենց թանկագին մաեստրոն այդպես խայտառակվելու է։

Հետևյալ վայրկյանին այս տարօրինակ երաժշտության հիման վրա հնչեց ճիշտ այնպիսի իմպրովիզացիա, որին հասարակությունը հենց նոր կատաղի ծափահարում էր։ Այստեղ կային և՛ մոտեցող փոթորիկ, և՛ վայր գլորվող ծյունակույտեր, և՛ փրկարար զանգ, և՛ աղոթք-խմբերգություն, բոլորը, ինչ կար «վիրտուոզի» մոտ, միայն... կառուցված դիսհարմոնիկ անհեթեթության վրա։ Երաժշտությունը հնչեց որպես դաժան ծաղր ֆրանսիացու սենտիմենտալ, «սիրտ ճմլող» արվեստի նկատմամբ։ Ծաղրվում էին և՛ նրա կեղծ հնարները, և՛ նրանք, ովքեր հիանում էին դրանցով։

Ունկնդիրները չգիտեին՝ վրդովվե՞լ, թե ծիծաղել։ Նրանք չէին կարող չընդունել իմպրովիզացիայի նրա վարպետությունը՝ շուռ տված նոտայի թեմայով, որը սպիտակին էր տալիս դաշնամուրի վրա։ Սակայն և թաքցնել իրենց զայրույթը նրանք ի վիճակի չէին։ Նվագախմբի անդամները և երաժշտությունից հասկացող մարդիկ ծիծաղում էին։

Միայն հյուրասեր տանտերերն էին զոհ։ Նրանց կարծիքով «մերը» իրեն ցույց տվեց որպես արտասահմանցուն արժանի մրցակից, չնայած որ ընտրեց մի փոքր «տարօրինակ թեմա»։

Իսկ Դանիել Շտեյբելտը, որ չթաքցրած հեգնանքով էր լսում «թեման» և անհամբերությամբ սպասում, թե ինչ դուրս կբերի այդ տարօրինակ երիտասարդը նման խառնաշփոթությունից, վերջապես հասկացավ, որ իր վրա ծիծաղում են, և աննկատելիորեն հեռացավ դահլիճից։

Նա մեկնեց Վիեննայից և այլևս երբեք չեղավ այդ քաղաքում։

Հետագայում լուր տարածվեց, որ Դանիել Շտեյբելտը հրաժարվել է իմպրովիզացիայից։ Իսկ իր համերգներին՝ ի լուր ամենքի, հայտարարում էր, որ կատարելու է հանճարեղ կոմպոզիտոր Լյուդվիգ վան Բեթհովենի ստեղծագործությունները։

Թարգմ. ՍԱՐԻՆ ՀԱՐԴԵՆՅԱՆ
Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@



Հ. Ա. ԴՅՈՒՐՋՅԱՆ — Մարտիկ

## ԱԿՆ ԸՆԴ ԱԿԱՆ

Մի անգամ Մարկ Տվենը կարդալու համար մի գիրք խնդրեց իր հարևանից:

— Հաճույքով կտայի,— պատասխանեց հարևանը,— բայց ես, որպես կանոն, արժեքավոր գրքերը տանից դուրս չեմ տալիս: Եկեք իմ գրադարանը և կարդացեք:

Անցավ որոշ ժամանակ: Մեծ երգիծաբանի հարևանը իր ծառայի հետ մի գրություն ուղարկեց և խնդրեց գերանդի տալ՝ մարգագետինը հնձելու:

Մարկ Տվենը անմիջապես պատասխանեց սիրալիր նամակով:

— Իհարկե, հարևան, ես երջանիկ կլինեի օգտակար լինել ձեզ, բայց քանի որ ես տանից ոչինչ դուրս չեմ տալիս, ապա առաջարկում եմ գերանդին օգտագործել իմ այգում...

# ԼԵՌՆԵՐԻ

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

— Դու ճանաչո՞ւմ ես Լյուդմիլային, Յա՛ն,— ասաց մի անգամ Բոլխայա լեռնանցքի հսկիչ տան ավագը:

— Ո՛չ,— ասացի:

— Իսկ ինչո՞ւ. չէ՞ որ նա քո հայրենակիցն է: Երևանցի հայ է: Լյուդմիլա Ալեքսեյի Դեմիրճյան:

— Չգիտե՛մ, Ալեքսեյ, չեմ ճանաչում:

Այսպես զրուցում էինք Բոլխայա լեռան հրակից տան պատուհանի առաջ նստած՝ ես և Ալեքսեյը: Մենք խոսում էինք ու նայում լեռան մռայլ գագաթներին, որի վրայով թռչուններն էին թռչում, որոնց թևերը չէին բարձրանում: Անսահման լռություն և անդորր էր տիրում այդ ձյունե բարձունքներում: Միակ ձայնը, որ ծնվում էր գագաթների ձյուներից և մինչև ուշ աշուն, մինչև ցրտերի սաստկելը, իր բյուրեղյա կոհակներով հոսում էր ցած՝ չէր խռովում նրա սուրբ հանգիստը:

— Հայ է, երևանցի հայ է Լյուդմիլան, ես այդ հաստատ գիտեմ, Յա՛ն, ճանաչում եմ նրան:

— Ի՞նչ է անում այդ Լյուդմիլան:

— Բուժակ է, Բոլխայայի բուժակն է: Ես նրան լավ գիտեմ: Ուզում էի իմանալ՝ դու քո հայրենակցին ճանաչո՞ւմ ես, թե ոչ: Պարզվեց, որ դու նրան չես ճանաչում, բայց այդպիսի մարդուն արժե ճանաչել, Յա՛ն: Նախ՝ հայ է, հետո էլ՝ շատ ինքնատիպ մարդ է: Խոշոր գիսակներ ունի, բարի ձայն և չափազանց համեստ բնավորություն, բայց ամենից լավն այն է, որ միշտ երգելով է բարձրանում ու երգելով իջնում լեռնանցքը:

Լեռան արևմտյան գագաթները իրենց գունատ հանգստությունը նշում էին ինչ-որ անցից անդրադարձող թույլ ամպերի մեջ, իսկ փեշերը մթնել, սևացել էին: Վտակի աղոտակ ժապավենը այլևս չէր նշմարվում: Ինչ-որ տեղ տագնապով ծղրտում էր մի հավք: Լեռան ուսից վերև գագաթներն էին բարձրանում ամպերի գլխին: Պատուհանի ապակին կորցնում էր իր փայլը, ծածկվում նոր, կաթնագույն շղարշով: Լուծվում, անհետանում էին լեռան սև ամպերը:

Մութն ընկնում է, Յա՛ն, գիշերը մեզ մոտ:

— Լյուդմիլան ե՞րբ է գալու:

— Երևի վաղը:

— Նա ինչո՞ւ է գալիս մեզ մոտ:



digitised by A.R.A.R.@

# ԵՐԳԸ

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

— Հիվանդ ունենք,— նա շուռ եկավ. ցույց տվեց բարակի խորքում, չոր տախտակամածին պառկած մարդուն,— հիվանդ է։ Բուժակը բժշկում է նրան։

— Երգում է,— լսվեց հիվանդի ձայնը.— ինչ-որ երգ է երգում։ Երգով բուժում։ Երկու կաթիլ դեղ է տալիս, հինգ ժամ երգում։ Իսկական երգեհոն է մեր բժիշկը։

— Ի՞նչ է երգում, Ալի՛,— հարցրեց տնակի ավագը։ Ալին չպատասխանեց։— Անցած ձմեռ,— շարունակեց Ալեքսեյը,— շատ ծանր հիվանդացա։ Ամբողջ մարմինս ցավում էր, առողջ տեղ չկար։ Բարձր ջերմություն ունեի, զառանցում էի։ Տղաները լուր ուղարկեցին, գիշերվա կեսին եկավ։ Դեռ հեռվից իմացանք, որ գալիս է։ Նա միշտ երգելով է գալիս։ Ինչպե՞ս է այդ երգը, տղաներ, չե՞ք հիշում։ «Գալի՞ս է, Լյուդովիկոսը գալի՞ս է»— բացականչեցին տղաները, բայց նա դեռ մի կես ժամ պետք է բարձրանար։ Վերջապես, դուռը բացվում է, և ներս է մտնում մեր դոկտորը։ Նա այդպես էլ երգելով ներս ընկավ։ Այնպես էլ բամբ ձայն ունի անիրավը։ Ես տաքության մեջ էի, չէի հասկանում, բայց նրա երգը լսում էի և ինձ թվում էր, թե լեռան վրա ամպեր են կուտակվում, ահավոր որոտով գոռում են ցած, թվում էր, թե բանակներ են շարժվում, ձիերի խրխինջ եմ լսում, թմբուկների թնդյուն... Մի խոսքով, տաքության մեջ էի, Յա՛ն։ Տղաներն ասում են, որ նույնիսկ սրսկելու պահին երգում էր։ Լուսաբացին տաքությունս իջավ, աչքս բաց արի, տեսնեմ դոկտորը նստած ընկել է, կհավատա՞ս, Յա՛ն, եթե ասեմ, որ ընկել էր երգը շուրթերին։ Ես այդ տեսա, Յա՛ն, աչքովս տեսա։ «Սուս կացեք, տղերք, թող քնի,— ասացի մերոնց,— հոգնել է խեղճը, չխանգարեք, թող քնի»։ Նա երկար քնեց, շատ երկար, մինչև իրիկուն։ Երեկոյան ես ինձ լավ էի զգում։ Նա արթնացավ քնից և չերգեց։ Բոլորս էլ մի տեսակ վատ զգացինք մեզ։ Շատ անսովոր բան էր, Յա՛ն։ Նույնիսկ, երբ դուրս եկավ՝ չերգեց։ Չերգեց նաև լեռից իջնելիս։ Մենք կանգնել սպասում էինք, որ երգի։ Նա լուռ հեռացավ, իջավ ոլորաններով, մտավ կիրճը, մի պահ կանգնեց իր սիրած վտակի ափին և չերգեց։ Գիշերը ծանրացավ մեզ վրա, չքնեցինք, շատ անսովոր բան էր։ Լռել էր երգը, հասկանու՞մ ես, թե ինչ էր նշանակում այդ։ Մենք բոլորս միասին փորձում էինք վերհիշել երգը, այն երգը, որ նա էր երգում, փորձում էինք և չէինք կարողանում։ Մեր շուրջը մութ գիշեր էր, մռայլ լեռների անեղ շուրջպար, և այդ գիշեր մենք երգ չունեինք։ Այդ գիշեր մենք զգացինք, որ մարդը պետք է երգի, երգի բարձրաձայն, լուռ, աղաղակելով, լալով, խնդալով երգի, ինչպես ուզում է՝ թող երգի, միայն թե երգի։

— Այն երգը հայրենի լեռների մասին էր,— հանկարծ ասաց անկյունում պառկած հիվանդը։

— Այո, այդպես էր,— բացականչեց Ալեքսեյը։

Գիշերվա կեսին, մռայլ լեռների գրկում, սիրտս լցվեց կարոտով և ես երազումս Լյուդովիկոսին տեսա։ Մեծ, հսկա տղամարդ էր նա։ Խոշոր դեմք ուներ, բամբ ձայն։ Ես բարևեցի նրան։ Նա



ձեռքը պարզեց, ձեռքն ինձ չհասավ։ Ես ուզեցի երգել՝ արթնացա։

* * *

Մի քանի օր հետո Լյուդովիկոսին տեսա նույն այդ տնակում։ Աշնան վերջին օրերն էին, հորդ անձրև էր գալիս։

— Դե՛հ, հիմա ծանոթացեք,— ասաց Ալեքսեյը։



digitised by A.R.A.R.@

— Դո՛ւ հա՞յ ես,— որոտացող ձայնով ասաց Լյուդովիկոսը,— եթե հազար մարդու մեջ տեսնեի ձեզ, կիմանայի՝ որ հայ եք, բարև՛ ձեզ,— ասաց և գրկախառնվեց: Երբ արդեն հայտնի էր նրան որտեղացի և ինչ լինելս, նա ուղղակի հարցրեց.

— Երգել գիտե՞ս:

— Մի կերպ:

— Այդ պատասխան չէ, ի՞նչ է նշանակում՝ մի կերպ: Ապա ցույց տուր կարողությունդ,— ասաց, կանգնեց սենյակի մեջտեղում և իր թավ բարիտոնով սկսեց երգը. ես իմ թույլ ձայնով հետևեցի նրան: Նա հանկարծ լռեց.

— Այս երգը նստած չեն երգի,— ասաց,— ոտքի կանգնիր, մա՛րդ:

Ես ոտքի ելա:

Նա շարունակեց:

Ես կրկնեցի նրան:

— Այդպես չեն երգի, երգը չեն սպանի, մա՛րդ: Ուղիղ կանգնիր, գլուխդ վեր, նայիր հեռուն, նայիր հույսով, հավատով, բացի հայացքով նայիր:

Ես փորձեցի այդպես անել:

— Դերասանի նման մի՛ ցցվիր: Երևում է, որ դու այդ երգը երգելով չես քայլել, ուրիշներից ես լսել: Հիմա դու լսե և նայիր, թե ինչպես եմ երգում:

Նա նայեց բոլորիս, օձիքը բացեց և զինվորական քայլերգի տակտով սկսեց երգել: Առաջինն Ալեքսեյը բարձրացավ տեղից և խուլ ձայնով ձայնակցեց նրան, հետո բարձրացանք բոլորս և բոլորով երգեցինք:

— Այսպես կերգեն այս երգը,— ասաց նա, երբ երգը վերջացավ,— երգը փչացնել չի կարելի: Երգը քաղաքներ է առնում, ամրոցներ կործանում: Երգով են լեռներ բարձրանում, երգով ցած իջնում:

— Իսկ դու, դոկտո՛ր, այն օրը չերգեցիր, առանց երգի գնացիր,— ասաց Ալեքսեյը:

— Այո՛, այն օրը ես մորս ձայնն էի լսում,— պատասխանեց Լյուդովիկոսը,— այն օրը մայրս էր երգում: Ես լսում էի, որպեսզի լսեմ նրա ձայնը: Գուցե նա իսկապես այդ օրը երգեց ինձ համար,— նա տխրեց, անորոշ հայացքով նայեց բոլորիս և հազիվ լսելի ձայնով ասաց.— Ես գնում եմ, ուրիշ հիվանդներ չունե՞ք:

— Անձրև է գալիս, դոկտո՛ր, մի՛ գնացեք, գիշերեք մեզ մոտ,— լսվեց բարաքի խորքից:

— Մնացե՛ք, դոկտո՛ր,— ասաց Ալեքսեյը:

— Մնացե՛ք,— խնդրեցի ես:

— Ո՛չ, պետք է գնամ,— ասաց ու գնաց: Նրա ահագին մարմինը լուծվեց թանձր մառախուղի մեջ: Հորդ անձրևն `աղմուկով թափվում էր տայգայի վրա: Հեղեղը որոտով լցվում էր կիրճը: Նա գնաց, այդ օրն էլ առանց երգի գնաց:

— Լավ չէ,— ասաց Ալեքսեյը,— վերջանում է մարդու երգը: Եթե մարդը չի երգում, նշանակում է լավ չէ: Նշանակում է մարդը տխուր է:

— Նա մորը հիշեց,— ասաց Ալին:

Ոչ ոք այլևս ոչինչ չասաց:

Ամպերը որոտով ձորը լցվեցին, կարծես հետապնդում էին բուժակին: Լուսադեմին, երբ անձրևը դադարեց, քամին դուրս եկավ ձորից:



digitised by A.R.A.R.@




ԴԵՐԵՆԻԿ ԴԱՆԻԵԼՅԱՆ

Սիրելի երեխաներ. ձեզնից շատերը երևի չգիտեն, որ կիրառական արվեստը ամենահնագույն, տարածված և հանրածանոթ արվեստն է: Ինչպես ինքը՝ անունն է ցույց տալիս, կիրառական արվեստին են պատկանում այն գործերը, որոնք ստեղծվել են մարդու կյանքում կիրառվող առարկաներին, հատկապես մարդու կենցաղում գործածվող իրերին գեղեցիկ և հաճելի ձև տալու միջոցով:

Մարդը ծնված օրից շրջապատված է կիրառական արվեստի գործերով. գավաթը, որով մայրը երեխային կաթ կամ թեյ է տալիս, պնակը, որի մեջ այդ կաթը կամ թեյը սառեցվում է, խալին կամ կարպետը, որ փակցված է երեխայի մահճակալի մոտ կամ փռված է գետնին, այդ բոլորը կիրառական արվեստի գործեր են:

Մարդու «ամենամարդկային» հատկություններից մեկը ձգտումն է դեպի գեղեցիկը, այդ պատճառով էլ ամենահնագույն գործիքներն ու ամանները, որոնք այժմ հայտնաբերվում են պեղումների ժամանակ, հաճախ մեզ զարմանք ու հիացմունք են պատճառում իրենց ձևերի, զարդանկարների և զարդաքանդակների գեղեցկությամբ:

Եթե դուք եղել եք մեր պատմական թանգարանում, ապա տեսած կլինեք, թե սկսած հնագույն ժամանակներից մեր նախնիները ինչպիսի սիրով ու ճաշակով են պատրաստել իրենց առօրյա գործածական իրերը՝ ամանները, զենքերը, գորգերը, երաժշտական գործիքները, զարդերը, հագուստներն ու կահկարասին: Մեր խաչքարերը, որոնք



Ոսկեջուր անոթ

հանդիսանում են տապանաքարեր, մինչև այժմ մեզ զարմացնում են իրենց զարդաքանդակների հարստությամբ, բազմազանությամբ, նրբությամբ ու ճաշակով:

Իհարկե, այդ թվարկած իրերը բոլորը արվեստի գործեր չեն, բայց շատերը իրենց ձևի կատարելությամբ և նուրբ ճաշակով արժանի են այդ բարձր կոչմանը:

Համայնական տնտեսության ժամանակ, երբ դեռևս համայնքի անդամները իրենք էին պատրաստում առօրյա գործածական իրերը, իրենք էլ իրենց ճաշակի համաձայն գեղեցկացնում ու զարդարում էին դրանք, օգտագործելով շրջապատի բուսական ու կենդանական աշխարհի մոտիվները:

Հետագայում ստրկատիրական, ապա ճորտատիրական հասարակարգերում սկսում են զարգանալ արհեստներ, ստեղծվում են արհեստագործական ցեխեր, իրենց որոշակի տրադիցիաներով, որոնք փոխանցվելով սերնդե-սերունդ, աստիճանաբար զարգանում և հասնում են մեծ կատարելության:

Տիրապետող դասակարգերը և եկեղեցին օրըստօրե հարստանալով՝ ձգտում են ավելի մեծ ճոխության, որը ստեղծում է թանկարժեք և գեղարվեստական բարձր ճաշակով պատրաստած արդուզարդի, զենք ու զրահի, խալիների, կերպասների օրինակներ: Այդ ժամանակ



digitised by A.R.A.R.@



Էմալապատ բաժակ

հատկապես զարգանում են արհեստները և արհեստակցական ցեխերի շատ վարպետներ հասնում են այնպիսի կատարելության, որ նրանց պատրաստած արտադրանքը ստանում է բարձր գեղարվեստական որակ:

Ֆաբրիկա - գործարանային արտադրությունը զարգանալով՝ շուկան լցնում է էժան ու մատչելի ապրանքներով և աստիճանաբար ոչնչացնում է արհեստները:

Ֆաբրիկա-գործարանային արտադրության մեջ անհատի վարպետությունը և ճաշակը այլևս որոշակի դեր չեն խաղում արտադրանքի գեղարվեստական որակի խնդրում, որովհետև յուրաքանչյուր քանակով մասնակցում է միայն արտադրական որոշ պրոցեսին և առնչություն չունի արտադրած ապրանքի վերջնական տեսքի ու ձևավորման հետ: Այս պայմաններում առաջ է գալիս տվյալ արտադրության մասնագետ արվեստագետի պահանջ, որի խնդիրն է տվյալ առարկայի գործածական դերին չաղկապել նաև գեղարվեստական ձևը: Այդ պատճառով էլ մեր օրերում ստեղծվել են կիրառական կամ, այլ կերպ ասած, դեկորատիվ արվեստի մասնագետ արվեստագետներ, որոնց ստեղծած կամ նախագծած նմուշներով մեր արդյունաբերությունը պատրաստում է արտադրանքի խոշորագույն մասը՝ ամանեղենը, զարդերը, ապակեղենը, կահ-կարասին, կտորներն ու կերպասները, խաղալիքները, հագուստներն ու կոշիկները, ավտոմեքենաներն ու էլեկտրական սարքավորումը և նույնիսկ դագաղները:

Կիրառական արվեստի հետագա զարգացման նպատակով մեր երկրում հաճախ են կազմակերպվում այդ արվեստի գործերի ցուցահանդեսներ, որոնք ծանոթացնում են մեր լայն հասարակությանը գործածվող առարկաների նոր նմուշների հետ և հնարավորություն են ստեղծում դրանցից լավագույնները ընտրել մեր արդյունաբերության համար:



Արծաթյա պնակ

*Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*

# „ԻՄՍ ԱՆՑԱՎ, ՆՈՐԱՆԸ ՄՆԱՑ"

*ԳՐԻԳՈՐ ՋԱՐԵՅԱՆ*

*Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ*

*Ջերմացած դեմքը հենած ապակուն, մտասույզ աչքերով նայում էր նա փողոց: Դրսում խոշոր փաթիլներով ձյուն էր գալիս: Աննկատ սահում էր մոռացված ժամանակը՝ ծնելով միայն հուշերի պատառիկներ: Դժվար է ասել, թե ինչ էր հիշում նա, միայն պարզ էր մի բան. դրանք ինչ-որ մեղմիկ, ինչ-որ թովիչ, բայց վաղուց անցած պատկերներ էին, որից մնում է միայն հաճելի, ոչ սիրտ մորմոքող զգացում...*

*Նայում էր դուրս, սրտի ինչ-որ անկյունում բնակատեղծական տողեր էին բռնկվում ու մարում... Եվ մարեցին բոլորովին, երբ սահուն, բայց ծիերի դոփյունով, սահնակը կանգնեց նրա տան առջև և ահագին մուշտակի մեջ փաթաթված կառապանը վեր նայեց:*

*Նա շուռ եկավ լուսամուտից, հիշեց, և դրանից դառն կնճիռներ դիզվեցին լայն ճակատին: Առավոտյան մոսկովյան մեծահարուստ Անանովից մի երկտող էին բերել, որով երեկոյան նրան տուն էին հրավիրում:*

*Դժկամությամբ հագնվեց: Որքա՜ն նա չի սիրում այդ երեկոները՝ բյուրեղյա մոմաջահերով լուսավորված, անճաշակ, մեկը-մյուսի կողքին շարված բազկաթոռներով, հսկա. դաշնամուրով դահլիճներում, ուր պատերին՝ ծնողների, պապերի, պապապաերի թավ բեղերով, կարմրատակած երեսներով, ժամացույցների ոսկե շղթաներով*



digitised by A.R.A.R.@

դիմանկարներ կան։ Նա դանդաղորեն իջավ աստիճաններով։ Նրբին դեմքին քաղցր մի ժպիտ ծագեց միայն, երբ ողջունեց կառապանին և նստեց սահնակ, որը զանգակները զնգզնգացնելով շարժվեց առաջ։ Չգիտես ինչու, նա հիշեց տարեթիվը։ Այսօր 1883 թվականի մարտի 3-ն է։ Հունվարի 25-ին էր, երբ նա այստեղ՝ Մոսկվա եկավ։ Կարճ ժամանակ էր անցել, բայց Անանովը այս էլ քանիերորդ անգամ նրան տուն է հրավիրում։

Պատիվ է անում,— հեգնանքով շշնջաց նա, փոքրիկ մարմինը ավելի փաթաթելով լայն մուշտակի մեջ։

— Պատիվ է անում,— կրկնեց, և հանկարծ Անանովի փոխարեն տեսավ հուզմունքից ալիքվող դահլիճները, հազարավոր մարդկանց վառվռուն աչքերը, կարծես լսեց ծափերի ամպրոպներն ու ժպտաց։ Չգիտես հպարտությունի՞ց, ամոթխածությունի՞ց, թե՞ ցրտից կարմրեց, վառվող աչքերը նորից հանգան։

Կրկին հիշեց երեկոները՝ հարուստների տներում։ Ի՞նչ գործ ունի ինքը՝ հանրահայտ արտիստը նրանց մոտ։ Ի՞նչ գործ ունի։

— Կյա՞նք,— քմծիծաղեց նա։— Հարուստները կարող են իրենց ամեն ինչ թույլ տալ, գնել նույնիսկ հանճարը։ Բայց նրանք սխալվում են,— ավելացրեց նա, հիշելով իր վեհ, գլուխը բարձր քայլքը նրանց խմբերի մեջ, նրանց խոնարհումները մինչև գոտկատեղ՝ գլխի իր թեթև շարժումին և դրանից մի քիչ պայծառացավ։

Սահնակը կանգ առավ սյունազարդ դղյակի առաջ։ Լույսով ողողված պատուհաններից ծյան հետ միասին մեղմ իջնում էին երաժշտության հնչյունները։

— Ո՞վ է այդպես նվագում,— անցավ մտքով, հիշեց նրբամատ, իրեն նայելիս շուտ շառագունող օրիորդին։ Գուցե նա է... այո՛, նա է, միայն նա այստեղ կարող է այդպես։ Շոպեն նվագել, հնչյուններով գծելով ռոմանտիկական, երազային ինչ-որ աշխարհներ, ուր թախիծը մաքուր է, ուրախությունն անխառն և ուր ծաղիկներ կան անթիվ-անհամար։

Եվ նրա հոգում կրկին սկսեցին բռնկվել ու մարել բանաստեղծական տողերը։ Նա արդեն քայլում էր աստիճաններով վեր՝ մուշտակը թողած դռնապանի ձեռքերին։ Քայլում էր՝ գեղեցիկ գլուխը բարձր։ Կարծես հույն արձանագործի հանճարեղ ձեռքն էր կերտել այդ գլուխը՝ լայն ճակատ, վառվող, խոշոր աչքեր ու մի քիչ դալուկ այտեր։ Ահա և նա դահլիճի դռանն է, իսկ ծառայապետը զեկուցում է.

— Պարոն Պետրոս Ադամյա՜ն։

Դահլիճում հասարակությունը մեկեն շուռ է գալիս, տանտերը ուրախ ընդառաջ է գնում և թևանցուկ անում։ Այժմ քայլում են երկուսով։

— Այս ի՞նչ է, ո՞վ է... արդյոք նա՞ է,— հանկարծ կանգնում է Ադամյանը և իր աչքերի ողջ հուրը նետում այնտեղ, ուր նստած է սպիտակահեր գլխով մարդը, որը նույնպես իրեն է նայում սուր, մինչև խորքը թափանցող, բայց կայծկլտացող աչքերով։

— Ո՛չ, չի կարող պատահել,— ուզում է իրեն հակառակն ապացուցել Ադամյանը։ Նրա գլխում այժմ ոչինչ չկա, բացի ծիգ նստած, իր արժանապատվությունը բարձր գիտակցող մարդուց, որն ըստ երևույթին միայն իրեն է սպասում։

Այ քեզ երջանկությու՜ն։ Շատ է մեծ մարդկանց հանդիպել, շատ է շոյանք լսել նրանցից, ինքն էլ սիրտը բացել, բայց այս մեկն ուրիշ է։

Ծերունին աշխույժ, ուղիղ կանգնում է։ Նիհար, սլացիկ մարմին, մի քիչ երկարավուն, բայց հանճարեղ գլուխ՝ կիսված մորուքով։ Իսկական աստված,— անցնում է Ադամյանի մտքով։



digitised by A.R.A.R.@

— Ահա և նա, որին շատ էիք ուզում տեսնել,— ծայնի մեջ ինչ-որ շողոքորթ, բայց իր տանը նըման հյուրեր ունեցող մարդու հպարտությամբ ասում է Անանովը՝ ծերունին:

— Ուրա՜խ եմ, ուրա՜խ եմ,— ասում է նա և շուռ գալիս դեպի Աղամյանը:

Արտիստը ամուր-ամուր սեղմում է նրա ձեռքը: Չէ՞ որ նա Հովհաննես Այվազովսկին է, մեծ նըկարիչը, ծովի կախարդը: Բազկաթոռները դեմդիմաց են: Նրանք նայում են իրար և զրուցում՝ մոռացած բոլորին:

Այվազովսկին հարցնում է Մոսկվայից Աղամյանի տպավորությունների մասին, հետո պատմում, թե որքան հիացմունքով են նրա մասին խոսում ամենուր և որ պատժված է համարում իրեն, որ Աղամյանին դեռ բեմում չի տեսել...

— Բայց կտեսնեմ, ա՛յ այն ժամանակ դիմացիր,— կատակում է նա: Աղամյանը լավ գիտե այդ կատակի իմաստը: Նա հպարտ է, որ Այվազովսկին այդպես է իր մասին խոսում, բայց ինչ-որ դող էր զգում: Չէ՞ որ այնքան էլ հեշտ բան չէ դուր գալ աշխարհահռչակ արվեստագետին, որը բոլորին է հայտնի իր խստությամբ, որը երբեմն դաժանության է հասնում արվեստը գնահատելիս:

Շարունակում են իրենց ջերմ զրույցը երկու հայ հանճարները:

Ոգևորված է վաթսունվեցամյա նկարիչը, հուզմունքից շառագունել է երեսունչորս տարեկան արտիստը: Մեկն արդեն նվաճել է աշխարհը, մյուսը նույնն է անում՝ հայերեն նվաճելով Ռուսաստանը:

— Թո՛ւղթ և գրիչ բերեք,— հանկարծ Անանովին է դիմում նկարիչը:

Թուղթ և գրիչ, ահա և դրանք: Սեղանը փոխակերպվում է կտավակալի: Գրիչը ամուր ձեռքերում շարժվում է ակնթարթային արագությամբ: Մի քանի վայրկյան և ծովը կենդանանում է թըղթի վրա, ծովը և նրա տակ մի ստորագրություն՝ Հովհաննես Այվազովսկի: Արտիստը նայում է ակնապիշ, նա էլ է նկարում, բայց ո՛չ այսպիսի արագությամբ ու վարպետությամբ: Այդ պահին կարծես Աղամյանի երևակայության վրա գծագրվում էին հազարավոր այն կտավները, որ աշխարհին կթողնի այս մարդը:

Ծովը ծփում է թղթի վրա, զգացումները խայտում են արտիստի հոգում, խայտում են, փոթորկի փոխվում, երբ վարպետը նկարը նվիրում է Աղամյանին: Արվեստագետը իր արվեստի լեզվով ողջունեց արվեստագետին:

Բոցավառվեց Աղամյանի հոգին, հուր լցվեցին աչքերը, բացվեց լեզուն չքնաղ, և ահա նա դահլիճի կենտրոնում է: Նա անէացավ, աշխարհային կարծես ոչինչ չմնաց: Գլուխը մի փոքր ետ գցեց,



ու մուրճի հարվածներով իջան Ֆրանսուա Կոպպեի «Գործադուլ դարբնյացի» տողերը:

Կարճահասակ արտիստը կարծես մեկեն դարձավ հսկա, փոխարկվեց հուժկու մի մունետիկի, որն աշխարհին ազատության է կոչում, մարդուն՝ պայքարի:

Կարդում է Աղամյանը, կարդում է միայն մեկի համար, բայց կարո՞ղ է նա միայն մեկին պատմել: Ո՛չ: Նրա արվեստը հազարներինն է, հասարակ մարդկանց հոգին կա դրա մեջ, թափը իր ժողովրդի, բայց և դառը ճակատագիրը նրա, որը պետք է փոխվի: Եվ Աղամյանը դրա համար է «Գործադուլ դարբնյացն» արտասանում:



digitised by A.R.A.R.@

Նկարիչը մտքերի մեջ սուզված, կկոցած աչքերով նայում է նրան. նայում է ու խորհում զուցե կյանքի մասին, խորհում է այն, ինչ այստեղ միայն ինքն ուահա այդ ոգեշնչված արտիստն են մտածում:

Աղամյանը կարդում է, և այդ էլ միայն բավական է, որ այն Այվազովսկին, որի համար հեղինակություններ չկան, վեր կենա, գրկի նրան ու զորովագին սեղմի կրծքին:

Այվազովսկին արդեն տեսավ Աղամյանին:

...Անմոռաց երեկոն անցավ: Աղամյանը տուն է դառնում թանկագին նվերը կրծքին: Օ, որքան երջանիկ է նա: Բայց այս ի՞նչ է, որտեղի՞ց են ամպագույժ այս մտքերը, որտեղի՞ց են բարձրանում մռայլ խոհերը: Խոհեր, որոնք դեռևս ոչինչ չեն ասում, բայց տանջում են: Նա չի հասկանում, բայց, բայց...

Տանն է: Պատերից նայում են իր իսկ նկարած ներհուն Համլետը, Օֆելիան՝ խելագարության մեջ անգամ խելոք ու զմայլելի... Հետո լուսանկարնե՜ր, լուսանկարնե՜ր...

Նայում է, նայում է Աղամյանը և կրկին չի հասկանում իր անհանգստության պատճառը... Նստում է... Ինքնաբերաբար վերցնում է գրիչը... Տառերը շարվում են դանդաղ... Կարդում է, ու կարծես խելագար մի տենդ կա աչքերում... Ինչո՞ւ այսքան երջանիկ հանդիպումից այս ծնվեց՝ «Ինչ անցավ, նորանը մնաց»: Արտիստը սարսափեց մոռացման վտանգից ու, կարծես ի մխիթարություն, տառերը գրեցին.

Պատմություն, նա զուցե զքեզ օր մը հիշե
Ապագայում, թէ հաճի:

Պատմությունը նրանց երկուսին էլ քանդակեց իր էջերում:

# ԱԴԵԼԻՆԱ ՊԱՏՏԻԻ ԱՆՁՆԱԳԻՐԸ

Փոստային ծեր չինովնիկը հանեց ակնոցը, ծամծմեց պատուհանը, բայց դեռ չէր հասցրել վեր կենալ տեղից, երբ մեկը տագնապալի սկսեց թակել: Չինովնիկը դուրս հանեց գլուխը:

Լայնեզր գլխարկով և շքեղ հրշազգեստով մի գեղեցիկ կին կանգնած էր սպասարանում:

— Ներեցեք,—ժպտաց կինը:— Ես հանգստանում եմ այստեղ: Արդյոք ցպահանջ նամակ չունե՞մ: — Եվ նա հայտնեց իր անուն - ազգանունը:

Գեղեցկուհին իտալացի աշխարհահռչակ երգչուհի Ադելինա Պատտին էր:

Չինովնիկը գննեց նամակները:

—Ունեք:

—Կարո՞ղ եմ վերցնել:

—Խնդրեմ ներկայացնեք ձեր անձնագիրը:

Երիտասարդ կինը բաց արեց փոքրիկ պայուսակը: Նրա երկար, սպիտակ մատները շատ որոնեցին, բայց անձնագիրը չկար...

—Հավանաբար մոռացել եմ տանը կամ կորցրել,— շփոթված ասաց կինը: —Բայց դա նշանակություն չունի: Ես Ադելինա Պատտին եմ, գուցե դուք լսե՞լ եք իմ անունը:

— Հայտնի երգչուհի Ադելինա Պատտիի մասին ես շատ եմ լսել և մի առանձին հարգանք ունեմ նրա նկատմամբ: Բայց պետք է փաստաթուղթ ներկայացնեք, որ իրոք դուք Ադելինա Պատտին եք:

Անծանոթ կինը նորից բաց արեց պայուսակը: Բայց այս անգամ էլ նա անձնագիրը չգտավ, և չինովնիկը կարեկցանքով ծածկեց պատուհանը:



—Ի՞նչ անել,—բարկանում էր արտիստուհին:

Եվ հանկարծ նա սկսեց երգել: Իր կախարդիչ ձայնով երգեց Ռոզինայի արիան «Սևիլյան սափրիչ» օպերայից: Նրա ձայնը դուրս եկավ բաց լուսամուտներից և սավառնեց դեպի կապույտ երկինքը: Անցորդները կանգ առան: Փոստի մոտ հավաքվեց ունկնդիրների մի մեծ բազմություն:

Ահա և վերջին հնչյունները: Բռնկեց ծափահարությունների մի ուժեղ որոտ:

— Ադելինա Պատտի՜, Ադելինա Պատտի՜, Ադելի՜նա,— լսվում էր այս ու այն կողմից:

— Հը՞,— ասաց Ադելինա Պատտին: Կարծում եմ հիմա արդեն կարող եք տալ իմ նամակը: Իմ անձնագիրն այստե՞ղ է, և նա ցույց տվեց իր կոկորդը:

Ասես հիպնոսացումից արթնացած՝ չինովնիկն արագորեն վերցրեց նամակը և մեկնեց երգչուհուն, հուզված ասելով.

— Շա՜տ շնորհակալություն, տիկին, շա՜տ շնորհակալություն...



digitised by A.R.A.R.@

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԼԵՈՆԱՐԴՈ ԴԱ ՎԻՆՉԻՆ ՍՏԵՂԾԵՑ ՋԻՈԿՈՆԴԱՆ

ԼՈՐԵՆՑՈ ԱՐԴՈՐԻ

*Օրվիետո, Պեզարո, Ռիմինի և այլ քաղաքներում ամբարտակների ու ջրանցքների շինարարության մեջ երկար տարիներ աշխատելուց հետո, Լեոնարդո դա Վինչին վերադարձավ Ֆլորենցիա։ Բորջի Կեսարի հրամանով նրան հանձնարարեցին Չեզենատիկոյի և Չեզենայի միջև նավարկելի ջրանցք կառուցելու պլանի մշակումը։ Իր բազմակողմանի տաղանդի շնորհիվ նա ամեն բանի գլուխ բերեց, բայց հարկ եղավ գեղանկարչությունը թողնել հետին պլանի վրա։ Սակայն այդ օրը, երբ նա ընթրում էր ֆլորենտացի իր ընկերների շրջանում, նրա մեջ նորից արթնացավ նկարիչը։*

*— Վաղը ես կսկսեմ նկարել փողոցում պատահած առաջին իսկ ֆլորենտացի գեղեցկուհու դիմանկարը, — ուրախ-ուրախ հայտարարեց նա։*

*Առավոտ վաղ, ստեղծագործական ավյունով լի, Լեոնարդոն դուրս եկավ Ֆլորենցիայի փողոցները՝ որոնել գեղեցկուհու հանդիպելու հույսով։ Նա շատ ման եկավ։ Բայց իզուր։ Հուսահատված նկարիչը մտածեց, որ քաղաքի բոլոր գեղեցկուհիները դեռ ես քնած են։ Նա արդեն որոշել էր տուն վերադառնալ, երբ հենց այդ պահին ինչ-որ մի ձեռք թփթփացրեց նրա ուսը։ Լեոնարդոն շրջվեց ու տեսավ իր հին բարեկամ Անտոնիո Հերարդինիին։ Անտոնիոն մենակ չէր։ Նրա կողքին մի երիտասարդ կին էր կանգնած։ Անտոնիոն ներկայացրեց նրան.*

*— Իմ դուստրն է, Լիզան։*

*— Չքնաղ աղջիկ է, — դուրս թռավ Լեոնարդոյի շուրթերից, — հրաշալի, խորհրդավոր աչքեր... և ի՜նչ աստվածային ժպիտ...*

*— Բայց իմ աննման Լիզան արդեն մի քանի տարի է, ամուսնացած է։ Նրա ամուսինն է Ֆրանչեսկո դա Բարթոլոմեո դել Ցենոբի դել Ջոկոնդոն։ Նրա անունը երկար է, դրա համար էլ ֆլորենտացիները նրան անվանում են Ջոկոնդո, իսկ իմ աղջկան՝ Ջոկոնդա։*

*Լեոնարդոն հիացած բացականչեց.*

*— Այս գեղեցկությունը և ժպիտը, որ ունի քո դուստրը, չպետք է կորչի։ Մարմինը մեռնում է, իսկ նկարները մնում են դարեր։ Ես կնկարեմ Ջոկոնդային։*



Լեոնարդո դա Վինչի — Ջոկոնդա

*Մեծ էր Մոննա-Լիզայի ուրախությունը։ Սակայն դիմանկարը ստեղծելու համար հարկավոր էր ստանալ նրա ամուսնու՝ Ջոկոնդոյի համաձայնությունը։ Կասկածամիտ, խստաբարո, խանդոտ այդ մարդը չէր սիրում, երբ Լիզան հանդիպում էր ուրիշ տղամարդկանց։*

*Բայց Լեոնարդոյի առաջարկությունը այնուամենայնիվ շոյեց համառ ամուսնու ինքնասիրությունը։ Վերջ ի վերջո նա համաձայնեց այն պայմանով, որ Լիզայի հայրը ներկա լինի սեանսներին։*

*Նման չքնաղ կերպար, պայծառ ու խորհրդավոր, Լեոնարդոն դեռ երբեք չէր տեսել, երբեք չէր նկարել ներքին այդպիսի կրակով։ Ի՞նչ էր ասում Մոննա-Լիզայի ժպիտը։ Ի՞նչ էր նշանակում դա իր՝ նկարչի համար, որը նկարում էր նրան։ Կանցնի հազար և ավելի դարեր...*

*Ամբողջ Ֆլորենցիան խոսեց այդ գլուխ-գործոցի մասին։*

*Այսպես, պատահական հանդիպման շնորհիվ, Լեոնարդո դա Վինչին ստեղծեց իր նշանավոր Ջոկոնդա կամ Մոննա-Լիզա նկարը, որն այժմ գտնվում է Փարիզի Լուվրի թանգարանում։*



digitised by A.R.A.R.@

# Անհայտ նկարիչը

ՎԱՀՐԱՄ ԳԱԼՍՏՅԱՆ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Մուրիլլոյին, Սևիլի հռչակավոր նկարչին երկար ժամանակ հետաքրքրում էր մի գաղտնիք։ Իր աշակերտների կիսավարտ կտավների վրա ամեն գիշեր ինչ-որ մեկը աշխատում էր։ Մի անգամ, երբ նա մտավ արվեստանոց, իր աշակերտները հավաքվել էին մի կտավի առաջ և հիացած նայում էին։ Մուրիլլոյի հիացմունքը նույնպես մեծ եղավ։

Մուրիլլոն լավ էր ճանաչում իր աշակերտներից յուրաքանչյուրին, գիտեր նրանց նկարչական ընդունակությունները և համոզված էր, որ այդ կտավի հեղինակը մի անհայտ նկարիչ է, որն օժտված է արտակարգ տաղանդով։ Բայց ինչո՞ւ էր նա թաքնվում և ո՞վ էր նա, այս միտքը հանգիստ չէր տալիս Մուրիլլոյին։

Արվեստանոց մուտք ուներ մի երիտասարդ ըստրուկ, որը մաքրում էր սենյակը, կարգի բերում։ Երբ Մուրիլլոն նայում էր կտավը, այդ ստրուկը դողահար կանգնել էր նրա մոտ։

—Ով որ վրձնել է այս կտավը, մի օր պիտի լինի մեր բոլորի վարպետը,—ասաց Մուրիլլոն։

Երիտասարդ ստրուկը ցնցվեց և շփոթված հայացքը իջեցրեց ցած։ Մուրիլլոն զննող դիտեց նրան և հարցրեց.

—Գիշերները ո՞վ է այցելում արվեստանոցը։

—Ո՛չ ոք, տեր, բացի ինձանից։

—Լավ, այս գիշեր խիստ հսկիր, և եթե վաղը դու ինձ չտեղեկացնես այս խորհրդավոր այցելուի մասին, կստանաս երեսուն խարազանի հարված։

Ստրուկը խոնարհվեց և լուռ հնազանդությամբ դուրս եկավ արվեստանոցից։

Երեկոյան, երբ նա մենակ մնաց, իր անկողինը փոխադրեց պատկերակալի մոտ և հանգիստ քնեց։ Գիշերը հանկարծ արթնացավ, վեր թռավ անկողնուց և բացականչեց. «Երեք ժամ ինձ է պատկանում, մնացած ժամերը տիրոջս են»։

Նա արագ շարժումով վերցրեց ներկապնակը, մոտեցավ պատկերակալին, մոռացած ամեն ինչ. սկսեց աշխատել։ Ժամերը լուռ գլորվեցին մեկը մյուսի հետևից։ Հանկարծ մի կամացուկ շշուկ պատճառ եղավ, որ ստրուկը ետ նայի։

Եվ ի՜նչ. Մուրիլլոն ու նրա աշակերտները հեռվից դիտում էին իրեն։ Սեբաստիանը սարսափից հայացքը խոնարհեց գետնին, զգալով, որ ինքը ըստրուկ է։

Մուրիլլոն հուզված մոտեցավ Սեբաստիանին և, դիմելով իր աշակերտներին, ասաց.

—Վճռեք Սեբաստիանի բախտը. նա արժանի է պարգևատրությա՞ն, թե՞ պատժի։

—Պարգևատրությա՜ն,—միաբերան բացականչեցին աշակերտները։

—Խնդրի՛ր, ինչ որ ցանկանում ես,—ասաց Մուրիլլոն։

Սեբաստիանը ծունկի գալով մեծ վարպետի առաջ, հույսով լի աչքերը հառեց նրա դեմքին.

—Հորս ազատություն տվեք. նա ծեր է և հիվանդ,—ասաց նա։

Մուրիլլոն խորապես հուզվեց ստրուկի խոսքերից, շոյեց նրա գլուխը և ասաց.

—Քո վրձինը ցույց է տալիս, որ դու տաղանդ ունես, իսկ քո խնդրանքը ապացուցում է, որ դու մեծ սրտի տեր ես։ Թող քո կամքը կատարվի, այսուհետև դու ստրուկ չես, այլ իմ որդին։



digitised by A.R.A.R.@

## ՁԱԽՈՐԴ ՆԿԱՐԻՉԸ

Մի երիտասարդ նկարիչ դժգոհում էր շվեյցարական նկարիչ ու քանդակագործ Բեոկլինին, որ իր գործերը չեն վաճառվում:

— Մի գործ նկարելու համար ինձ հարկավոր է երկու-երեք օր,—ասում էր նա,—բայց այն վաճառելու համար հարկավոր է երկու-երեք տարի:

Ծերունի նկարիչը թփթփացրեց ձախորդ նկարչի ուսին և ասաց.

— Իսկ դու փորձիր հակառակը. մի գործը նկարիր երկու-երեք տարում, և այն ժամանակ, հավանաբար, կվաճառես երկու-երեք օրում:

## ՎԻՃԱԿՎՈՒՄ Է ԿԱՆԳՆԵԼ

Գերմանացի նշանավոր դիրիժոր Վիլհելմ Ֆուրտվենգլերը պետք է ղեկավարեր նվագախումբը: Նա դահլիճ մտավ համերգն սկսելուց անմիջապես առաջ: Բոլոր տեղերը զբաղված էին: Ջահերը մարեցին: Դահլիճի սպասավորը, չճանաչելով դիրիժորին, մոտեցավ նրան և շշնջաց.

— Ցավոք սրտի ես չեմ կարող տեղ առաջարկել ձեզ. ազատ աթոռ չկա:

Ֆուրտվենգլերը ցույց տվեց նվագախումբը և պատասխանեց.

— Շնորհակալություն: Այդ դեպքում ես ստիպված պիտի կանգնեմ...

Եվ դիրիժորը քայլեց դեպի բեմը:

## ՑՐՎԱԾ ԳՐՈՂԸ

Սոֆիայի հրուշակեղենի խանութներից մեկը մտավ մի գրող, որը հայտնի էր իր ցրվածությամբ: Բարեկամները զարմանքով նկատեցին, որ նա տարբեր կոշիկներ է հագել. մեկը՝ դարչնագույն, մյուսը՝ սև:

— Հարգելի X,—ասացին նրան,—մի՞թե դուք չեք նկատում, որ ձեր ոտքերի կոշիկները տարբեր գույնի են:

— Նկատում եմ,—պատասխանեց ցրված գրողը, անճարակի պես վեր բարձրացնելով ուսերը:—Բայց ի՞նչ կարող եմ անել: Ես տանը ունեմ մի ուրիշ զույգ կոշիկ՝ ճիշտ-սրանց նման. մեկը՝ դարչնագույն, մյուսը՝ սև:



Քրմուհի Ռանայի

digitised by A.R.A.R.@

# ԴԱՐԵՐԻ ԽՈՐՔԻՑ

Երեխաներ, դուք շատ եք լսել եգիպտական բուրգերի, սֆինքսների, թագավորական գերեզմանների, փարավոնների արձանների մասին, բայց երևի չգիտեք, որ եգիպտական արվեստը աշխարհի ամենահին արվեստներից մեկն է, ստեղծված հազարավոր տարիներ առաջ: Ժողովրդական քանդակագործներն ու նկարիչները կերտել են շատ բանաստեղծական, խոր հոգեբանական և գեղարվեստական կերպարներ, իսկ ճարտարապետները թողել են հոյակապ կառույցներ: Սկզբնական շրջանում նկարիչները պայմանականորեն վերարտադրում էին իրենց ծանոթ այս կամ այն առարկայի առանձին մասերը: Նրանք, օրինակ, որսի և կռվի տեսարաններ պատկերելու համար նկարում էին զենք և ձեռքեր, վազքի և պարի համար ոտքեր:

Հետագայում Եգիպտոսում կազմվեց առաջին դասակարգային պետությունը: Ժողովրդի վրա տարածվեց եկեղեցու, փարավոնների, խոշոր հողատերերի տիրապետությունը: Փարավոնները օգտագործելով ստրուկների աշխատանքը, կառուցում էին հսկայական բուրգեր, եկեղեցական հոյաշալի տաճարներ, նրբակերտ սյուների վրա հենված պալատներ, փարավոնների և թագավորների խստությունն արտահայտող արձաններ, աստվածների պատկերներ, որոնք կառուցվում էին գրանիտից, բազալտից, ավազաքարից: Եգիպտոսում շատ մեծ տարածում գտավ նաև կիրառական արվեստը: Ժողովրդական վարպետները կենցաղային իրերը պատրաստում էին չտեսնված բարձր արվեստով, զարդարում ու նկարազարդում էին դրանք:

Եգիպտական արվեստը մեծ հետաքրքրություն էր հանդես բերում դեպի մարդը, նրա սովորությունները ու սխրագործությունները, նրա ներքին աշխարհը:

Հին եգիպտացիների արվեստը խոշոր նշանակություն ունեցավ մյուս ժողովուրդների արվեստի զարգացման գործում:



Կատու

Մեր օրերում դեռևս պահպանվել են եգիպտական արվեստի նմուշներ՝ քարե և կավե արձաններ, փորագրված ամաններ, սֆինքսների, բուրգերի մնացորդներ, թագավորների գերեզմաններ, աստվածների դիմանկարներ, որոնք մինչև օրս էլ պահպանել են իրենց հմայքը և մեծ հիացմունք են պատճառում մարդկանց:

Տպագրում ենք եգիպտական արվեստից մի քանի նմուշներ:

Շնագայլ



digitised by A.R.A.R.@

# ԺԱՅՌԱՓՈՐ ՈՐՋԻՑ ՄԻՆՉԵՎ ՔԱՐԵ ՊԱԼԱՏՆԵՐԸ



ՌԱՖԱՅԵԼ ԻՍՐԱՅԵԼՅԱՆ

Ով չի հիացել անտառապատ սարերով՝ բոլորված մեր սիրելի մայրաքաղաք Երևանով, նրա գեղեցիկ դիրքով, որի հեռավոր հորիզոնի վրա վեր է խոյանում Մասիս լեռը: Հայտնի է Երևանը իր գեղեցկությամբ, ճարտարապետական ոճի ամբողջությամբ, նրան հմայք տվող փողոցներով ու լայն հրապարակներով, բազմաթիվ հոյակերտ պալատներով, գեղեցիկ ու լուսավոր բնակելի տներով, պուրակներով ու կամուրջներով:

Բայց այս ճարտարապետությունը, նրա ազգային գեղեցիկ ոճը մեզ է հասել մեր նախնիներից, որոնցից մենք սովորել ենք կառուցել: Իհարկե, այդ միանգամից չի կատարվել, այլ անցել է բարդ և երկար ուղի:

Մեր լեռնաշխարհում, ժայռերի կատարներին, անտառներում ու հովիտներում կան շատ և շատ հին շենքեր, հաճախ կիսավեր կառուցվածքներ, անտիկ բերդեր, գեղեցիկ, նուրբ զարդաքանդակներով ու բարձր, վերասլաց գմբեթներով տաճարներ, որոնք դարձել են մեր չքնաղ բնության անբաժանելի մասը:

Դրանք բոլորը մեր նախնիների, հին ճարտար վարպետների հիշատակներն են, նրանց հմուտ ձեռքերի արգասիքը:

Բայց որքա՜ն դարեր են անցել, մինչև որ նրանք հողաշեն հյուղերից, քարե որմերից հասել են այդ մեծ արվեստին: Ինչպիսի՜ ժրաջան, ծանր ու հերոսական աշխատանք է պահանջվել՝ ճեղքել ժայռերը, կոփել նրանց հսկա զանգվածները, քարը քարին դնել, գտնել կառուցվածքի գեղեցիկ և իմաստալից ձևը:

Դեռ երեք հազար տարի առաջ ուրարտացիները բազալտե կարծր քարը հղկում էին այնպես լավ ու կանոնավոր, որ մինչև այսօր էլ զարմանք են պատճառում: Իսկ ուրարտացիներն էլ եկել էին հարավից և հաջորդել տեղացիներին, որոնք դեռ հինգ-վեց հազար տարի առաջ արդեն քարե շարվածքով տներ էին շինում:

Այսպիսով, շինարարական արվեստը մեզ մոտ շատ հին է: Եվ դա հասկանալի է: Չէ՞ որ Հայաստանում շատ է քարը: Մեր տուֆը և մյուս շինարարական քարերը լայն հնարավորություն ստեղծեցին զարգացնելու հայ ճարտարապետությունը:

Մոտ երկու հազար տարի առաջ արդեն երևում են հայկական ճարտարապետության առաջին բնորոշ նմուշները: Իսկ չորրորդ-հինգերորդ դարերում կառուցվում են բարդ և կատարյալ արվեստով շենքեր: Այդ շենքերից մեզ շատ քչերն են հասել, որոնց մեջ լավ պահպանվել են Երերույքի կամարակապ, խիստ ձևերով, բայց մեծաշուք տաճարը, Քասախի տաճարը և մի քանի այլ կառուցվածքների մնացորդներ:



Խաչքար

Յոթերորդ դարը իրավամբ միջնադարի հայ ճարտարապետության համար ամենաբնորոշ ժամանակաշրջանն է: Հայ ժողովուրդը այդ ժամանակ թոթափելով օտարի ծանր լուծը և դառնալով իր երկրի իսկական և միակ տերը՝ մեծ շինարարական աշխատանք



digitised by A.R.A.R.@



Անի քաղաքի պարիսպը

է ծավալում: Այդ դարերում են կառուցվում հոյակապ պալատներ, տաճարներ, ինչպիսին է Հռիփսիմեին Էջմիածնում, եռահարկ հոյակապ Զվարթնոցի եկեղեցին, որը թեև այժմ փլված է, բայց խոր տպավորություն է թողնում: Այդ դարաշրջանի հայկական ճարտարապետությունն համար նշանավոր է նաև նրանով, որ կառուցվում են բազմազան ձևերի ու տիպերի շատ տաճարներ, որոնք հետագայում զարգանում են, հարստացնելով հայ շինարարական կյանքը:

Հին քաղաքներին՝ Արմավիրին, Արտաշատին, Դվինին, գալիս են փոխարինելու նորերը, որոնց մեջ է մեծ համբավ վայելող Անին՝ Հայաստանի մայրաքաղաքը, իր շատ հարուստ ու շքեղ ճարտարապետությամբ: Անին արդեն 10-րդ դարում այնքան է մեծանում, որ իր նշանակությամբ դուրս է գալիս Հայաստանի սահմաններից: Անիի ճարտարապետությունը դառնում է հայ միջնադարի գլուխ-գործոցը. վերցնենք թեկուզ Անի քաղաքը շրջապատող պարիսպները, որ կառուցված են այնպիսի բարձր ճաշակով, գեղեցիկ ձևերով, քանդակներով ու հմտությամբ, որ դադարում են սոսկ պաշտպանական կառուցվածքներ լինելուց, ձեռք են բերում գեղարվեստական արժեք և դառնում ճարտարապետական բարձրարվեստ մի գործ: Անեցիները շատ էին սիրում իրենց քաղաքը: Քանի՜ անգամ են թշնամիները հարձակվել գրավելու համար այդ հարուստ ու գեղեցիկ ոստանը, բայց բնակիչների մեծ սերը հերոսության և սխրանքի է մղել նրանց, և ամեն անգամ անձնազոհ կերպով նրանք պաշտպանել են քաղաքը: Հայտնի է, որ այդ հարձակումներից մեկի ժամանակ՝ 1124 թվին մի հայ երիտասարդ կին՝ Այծեմնիկ անունով՝ բարձրացել է պարիսպների վրա և, քաղաքի պաշտպանների գլուխն անցած, քաջաբար կռվել է թշնամու դեմ ու հերոսաբար ընկել անհավասար մարտում:

Այս քաղաքումն է, որ հռչակվեց իր գործերով մեծատաղանդ ճարտարապետ Տրդատը: Նրա գործերից է Անիի մայր կաթողիկեի բազմակամար վեհանիստ տաճարը: Տրդատի հռչակը այնքան տարածված է լինում, որ նրան հրավիրում են Բյուզանդիայի մայրաքաղաք Կոստանդնուպոլիս՝ Այա-Սոֆիա տաճարի փլված գմբեթը վերակառուցելու: Այս տաճարը աշխարհում հայտնի էր իր գեղեցկությամբ, և Տրդատին հրավիրելը նրա ամենաբարդ մասը վերակառուցելու համար ցույց է տալիս, թե ինչպիսի մեծ ճարտարապետի համբավ ուներ անեցի Տրդատը: Եվ Տրդատը Այա-Սոֆիայի գմբեթը կառուցեց այնպիսի վարպետությամբ ու արվեստով, որ մինչև այժմ էլ մեծ հիացմունք է պատճառում նայողին: Վերակառուցված այդ գմբեթին տվին «հրաշալի» անունը, որը և Այա-Սոֆիա տաճարի հմայքն է հանդիսանում:

Մենք մեծ երախտագիտությամբ ու հպարտությամբ ենք հիշում այն բոլոր ճարտարապետների անունները, որ մեզ են հասել: Այդ ճարտարապետների թվում են մեզ արդեն ծանոթ Տրդատը, Զվարթնոցի ճարտարապետ Հովհանը, Վասպուրականի Վանա լճի Աղթամար կղզում սքանչելի քանդակազարդ տաճարը կառուցող ճարտարապետ Մանվելը:

Մեր հին ճարտարապետները կառուցել են ոչ





digitised by A.R.A.R.@

միայն տաճարներ ու եկեղեցիներ։ Մեզ են հասել նաև փոքրաթիվ, բայց կանգուն ու կիսավեր իջևանատներ, բերդեր, դպրոցներ ու հիվանդանոցներ, պալատական տներ, կամուրջներ, հուշարձաններ։ Բոլորովին ավերվել են բնակելի տները, որ ամենից շատ են ենթարկվել թալանի, իսկ եկեղեցիները, որ կառուցվում էին ավելի ուժեղ և հաստատուն մնալու համար, տոկել են մեծ մասամբ դարերից։



Գառնիի տաճարը (վերականգնում)

Մեր նախնիները տաճարների ճարտարապետության մեջ դրել են իրենց բազմադարյան մեծ փորձը, հմտությունն ու ճաշակը։ Նրանք այդ կառուցվածքների մեջ տեսնում էին իրենց արվեստի կիրառման ամենալայն ասպարեզը։ Այս պատճառով էլ մենք այդ շենքերը համարում ենք համաժողովրդական հարստություն։ Դրանք մեզ համար այլևս «աստծո տներ» չեն, այլ՝ շինարար ժողովրդի մնայուն գործեր։

Մեր սերը դեպի այդ քարե կոթողները առավել է մեծանում, երբ մտածում ենք, որ նրանք կառուցվել են ոչ թե պատերազմներում գերի վերցված հազարավոր ստրուկների տաժանակիր ու դաժան աշխատանքով, ինչպես անում էին հռոմեացիները, պարսիկներն ու եգիպտացիները իրենց ահռելի ու գոռոզ կառուցվածքները կերտելիս, այլ՝ հայ շինարարի ձեռքերով, մեր նախնիների քրտնաջան, ստեղծարար և ոգեշնչված աշխատանքով։

Ահա թե ինչու մենք այսօր այդ տաճարներն ու կամուրջները, ամրոցներն ու խաչքարերը, մեր հին վարպետների մշակած ամեն մի կառուցվածք խնամքով վերանորոգում ենք, փլված քարը դնում իր տեղը, սիրով պահպանում։



Ճարտարապետական հատված

digitised by A.R.A.R.@

# ՔԱՐԱՅՐԻ ուղեկը

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Մինչև գյուղը շատ չէր մնացել, բայց այնքան շոգ էր, որ այդ տարածությունը ինձ թվաց անհաղթահարելի: Ես պատսպարվեցի ճանապարհի վրա կախված կարմիր ժայռի ստվերում: Այնտեղ զով քամի էր խաղում: Մի մարդու զովացնող քամի: Ես բաց արի ալբոմը, որից ավելի հարմար ոչինչ չկա ինձ համար, և սկսեցի նայել ներքևում տարածված գյուղին:

«Ինչպիսի՞ն է այդ գյուղը, մարդիկ...»— ես աշխատում եմ գուշակել դեռ անդ չհասած: Ինձ օգնում են ներկն ու վրձինը: Իմ տեսածը ես քիչ-քիչ տեղափոխում եմ կտավի վրա և ճանաչում:

Երբեմն ինձ հաջողվում է, երբեմն՝ ոչ: Ես դեռ ուսանող եմ: Երբ իսկական նկարիչ դառնամ, կկարողանամ կտավի վրա տեղափոխել ամենայնը, որը ես ի վիճակի եմ տեսնել:

Դեռ նոր էի սկսել աշխատել, երբ իմ կողքին երեխաների ծանըր շնչառություն լսեցի: Ես զգացի նրանց և սկսեցի նկարել ուրիշ կերպ. չգիտեմ՝ ավելի լա՞վ, թե՞ վատ: Հետո ես շրջվեցի և տեսա նրանց:



Արևից խանձված երկու տղաներ էին. մեկը՝ խուզած գլխով, իսկ մյուսը՝ ոտաբոբիկ:

— Հը, նմա՞ն է,— հարցրի ես:

Նրանք չպատասխանեցին: Քիչ հետո նա, որ գլուխը խուզած էր, ասաց.

— Մեր գյուղում մի Ռուրիկ կա:

— Ի՞նչ:

— Ռուրիկ:

— Լա՞վ տղա է,— հարցրի ես, բաց կանաչավուն ներկը կտավի մի ծայրից մյուսը տարածելով:

— Քանդակագործ է,— նորից պատասխանեց նույն տղան,— ուլիկ է քանդակել, քարայրի մեջ նստած ուլիկ:

— Ո՞ւր է, ցույց տվեք,— ասացի ես հորիզոնի վրա ինչ-որ բան նկատելով:

— Ոչ ոքի ցույց չի տալիս:

— Ինչո՞ւ:

— Չի ուզում: Ես մի անգամ տեսել եմ:

— Ինչո՞ւ չի ուզում ցույց տալ:

— Նեղացել է:

— Ինչո՞ւ:

Տղան թափահարեց ուսերը: Գյուղում ինչ-որ բան է տեղի ունեցել: Գյուղում Ռուրիկին նեղացրել են: Հիմա արդեն այն, ինչ ես նկարում էի, դարձել էր ավելի հասկանալի:

— Հիմա Ռուրիկը որտե՞ղ է:

— Այստեղ,— ասաց տղան ցույց տալով իր ետևում կանգնած, ոտաբոբիկ տղային:

— Որեմն դո՞ւ ես Ռուրիկը... Ինչո՞ւ ձայն չես հանում: Ի՞նչ ես քանդակել:



digitised by A.R.A.R.@

— Ուլիկ... քարայրի մեջ նստած ուլիկ,— ընկերոջ փոխարեն պատասխանեց գլուխը խուզած տղան:

— Ցույց չե՞ս տա, Ռուբիկ:

— Ո՛չ,—ասաց նա:

— Ինչո՞ւ:

— Նեղացել է, չէ՞: — Նորից պատասխանեց գլուխը խուզած տղան:

Մի քանի վայրկյան լռություն էր: Հետո անսպասելի, ցածր ձայնով խոսեց Ռուբիկը.

— Դա Դավիթի ուլիկն էր: Իմը չէր: Իմը զառնուկ էր: Շատ փոքր ուլիկ էր: Չէր մեծանում: Շատ էր վազվզում, դրա համար էլ չէր մեծանում: Բարձրանում էր ժայռերի վրա, թաքնվում էր քարայրներում: Փնտրում, հազիվ էինք գտնում: Ուլիկը մեղք չուներ: Նա հո չէր հասկանում: Հետո փոքր էր: — Նա մի քիչ սպասեց, կոկորդը մաքրեց, ապա շարունակեց.— Մի անգամ, թաքնվել էր քարայրում. հազիվ գտանք... արդեն մթնել էր... Ես տեսա նրան քարայրում: Գլուխը հանել, նայում էր: Դավիթը շատ բարկացավ, սկսեց [illegible] ծեծել: Ուլիկը փախավ ու կորավ...

Ռուբիկը լռեց:

— Հետո՞,—հարցրի ես:



— Զգտան,—ընկերոջ փոխարեն նորից խոսեց խուզած գլխով տղան:— Կարող է, ժայռից անդունդն է ընկել:

— Ափսո՜ս,— անկեղծ խղճացի ես,—դու այդ ուլիկի՞ն ես քանդակել:

— Ըհը՛,—պատասխանեց ընկերը:

— Ինձ ցույց չե՞ս տա քո քանդակը:

— Նեղացել է, ցույց չի տա:

— Դավիթից է նեղացել, չէ՞:

— Բոլորից էլ նեղացել է:

— Բոլորի՞ց ես նեղացել,—հարցրի ես Ռուբիկին:

Ռուբիկը գլխով հաստատեց:

— Գնանք,— ասաց գլուխը խուզած տղան:

Նա առաջ ընկավ, իսկ Ռուբիկը գլուխը կախ հետևեց նրան: Ես չկանգնեցրի նրանց: Գուցե պիտի կանգնեցնեի... Ինձ թվաց, Ռուբիկը դժկամությամբ էր հետևում ընկերոջը: Գուցե նա ինձ ուզում էր ցույց տալ իր քանդակը... Շարունակեցի նկարել ներքևում տարածված ինձ արդեն ծանոթ գյուղը, ուր գնում էին երկու տղաները:

Նկարում էի ու ինձ թվում էր թե տեսնում եմ Ռուբիկի քանդակը... ժայռի անմշակ մի բեկոր, կենտրոնում ուլիկի փոքրիկ, շատ փոքրիկ գլուխ...



digitised by A.R.A.R.@

# ԻՆՉՈ՞Ւ ԵՆՔ ԱՍՈՒՄ ՋԱԶ

*ՄՈՎՍԵՍ ԼԵՎՈՆՅԱՆ*

Դա մի փոքրիկ կաֆե էր Չիկագոյի ծայրամասի փողոցներից մեկում, բաղեղի և վայրի վարդի դալար կանաչի մեջ կորած: Հավաքվում էին այդտեղ մեծ մասամբ երիտասարդները մի-մի բաժակ գարեջուր խմելու և մի փոքր էլ ուրախանալու համար: Կաֆեի տերը՝ Սեմ Հերը բարի, կատակասեր մի մարդ էր, ծիծաղում էր բարձր, անհոգ մարդու ծիծաղով և սիրում էր երաժշտությունը:

Կաֆեն առանձնապես աշխուժանում էր երեկոները, երբ նեգր Ջազբո Բրաունը իր փոքրիկ երաժշտական խմբով սկսում էր նվագել նեգրական երգեր և պարեղանակներ: Այդ աշխույժ, կրքոտ, մի փոքր էլ անսովոր երաժշտությունը շատ էր գրավում երիտասարդներին: Շուտով կաֆեի փոքրիկ սրահում պտտվում էին պարող զույգերը: Ընդհանուր աշխուժից Ջազբո Բրաունի ոգևորությունը հասնում էր իր գագաթնակետին: Նա միաժամանակ նվագում էր երկու երաժշտական գործիքի՝ պիկոլոյի և կորնետի վրա: Ահա այդ ընդհանուր ոգևորության պահին Ջազբոն սկսում էր ցույց տալ իր արվեստը, նա արագացնում էր տեմպը և պիկոլոյից երբեմն-երբեմն հանում էր սուր, կատաղի-ուրախ հնչյուններ: Երբ Ջազբոն կորնետի բերանին դնում էր պահածոների դատարկ տուփի մետաղե կափարիչը, դողդողացող ռնգային հնչյունները յուրատեսակ գունազեղություն էին տալիս երաժշտությանը: Այդ շատ էր դուր գալիս հանդիսականներին: Նրանք ընդհանուր աշխուժի մեջ բղավում էին՝ ,,բրա՜վո Ջազբո, բրավո՜", կամ ավելի կրճատ՝ ,,բրա՜վո, Ջա՛զ, էլի՛, Ջազ", և նեգր երաժիշտը երիտասարդների խրախուսանքից շոյված՝ ինքնամոռաց նվագում էր իր ազգային նեգրական երգերն ու պարեղանակները:

Շուտով Ջազբո Բրաունի երաժշտական խումբը մեծ համբավ վաստակեց ողջ Չիկագոյում: Նրան ընդօրինակող բազմաթիվ էստրադային նվագախմբեր կազմակերպեցին, որոնց մեծ սիրով ընկնդրում էր ժողովուրդը: Այդ երաժշտական խմբերի ծրագրերում մեծ տեղ էին գրավում ինչպես նեգրական, կուբայական, մեքսիկական, այնպես էլ արտասահմանյան մյուս երկրների ժողովրդական երգերն ու պարեղանակները: Էստրադային երաժշտությունը իր անմիջականությամբ, ռիթմիկ, ուրախ բնույթով նվաճեց լայն մասսայականություն: Նրա միջոցով անմիջապես տարածվում էին ժողովրդական գեղեցիկ երգերն ու մեղեդիները: Պատահում էր, որ երեկոյան էստրադային նվագախմբի կատարած այս կամ այն հոգեթով երգը հաջորդ առավոտյան արդեն գիտեր ողջ Չիկագոն:



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@

# ԻՍԿ ԴՈ՞Ւ...

## ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
### 1963 ԹՎԱԿԱՆԻ ԹԵՐԹԵՐԻ ԵՎ ԱՄՍԱԳՐԵՐԻ
## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Քո ծնողները, ավագ եղբայրներն ու քույրերը, հավանական է, վաղուց արդեն բաժանորդագրվել են իրենց հետաքրքրող թերթերին ու ամսագրերին։

Իսկ դո՞ւ, սիրելի դպրոցական, բաժանորդագրվե՞լ ես «Պիոներ» ամսագրին։ Եթե զանազան պատճառներով դեռ չես բաժանորդագրվել, շտապի՛ր։

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

| | |
|---|---|
| 12 ամիս | 2 ռ. 40 կ. |
| 9 ամիս | 1 ռ. 80 կ. |
| 6 ամիս | 1 ռ. 20 կ. |
| 3 ամիս | 60 կ. |

Եթե ուզում ես ամեն ամիս ստանալ քո պատկերազարդ ամսագիրը, կարդալ քո սիրելի գրողների պատմվածքները, բանաստեղծությունները ու հեքիաթները, գիտության և տեխնիկայի մասին տպագրվող զրույցները, լուծել «ժամանցի» հետքրքրաշարժ խնդիրները ու առաջարկները, «Պիոներ»-ին բաժանորդագրվիր մեկ տարով։

ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գլխավոր խմբագրի տեղակալ), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—14—83, 2—59—06

ՎՖ 02246։ Պատվեր 1338 Տպաքանակ՝ 8000։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 28/IX 1962 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։

Գինը 20 կ.



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջում՝ Էդ. ԴԵԳԱՅԻ «Պարուհին»

digitised by A.R.A.R.@

# ՀԱՄԵՐԳ ԲԱԿԼԱՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Բոլորին հայտնի է, որ բույսերն ականջ չունեն, սակայն ոչ բոլորը գիտեն, որ բույսերը երաժշտություն են լսում և նույնիսկ սիրում են այն: Այդ բանն իրենց փորձերով ապացուցեցին հնդիկ գիտնականներ Սինգհը և Պոնիախը:

Սկզբում նրանք որոշակի եղանակ էին նվագում ջրային բույսի՝ գիդրիլա վերցիտիլատայի համար: Համերգի ժամանակ բույսի բջիջներում պրոցեսներն ավելի կենդանի և ակտիվորեն էին ընթանում:

Այնուհետև երաժշտությունը օրական 25 րոպե ունկնդրում էր «ամաչկոտ միմոզան», և այդ բույսի թփերը ավելի երկար ու փարթամ էին դառնում, քան նրա հասակակիցներինը, որոնք մեծանում էին առանց երաժշտության:

Հնդիկ գիտնականների աշխատանքներով հետաքրքրվեց ամերիկուհի գիտնական Մերի Լոքը: Նա ցանկացավ ճշտել, թե բույսերը ինչպիսի՛ երաժշտություն են ամենից շատ սիրում: Փորձի համար նա վերցրեց սովորական բակլայի չորս աշխատամաս: Առաջին աշխատամասի համար նվագում էին Շոպենի մեղեդիները, երկրորդ աշխատամասի բակլաները աճում էին ջազի հնչյունների տակ: Երրորդը ամեն օր լսում էր վոկալիստներին, իսկ չորրորդը աճում էր առանց համերգների: Պարզվեց, որ բակլան նախընտրում է ջազը, իսկ ռոմանսների նկատմամբ անտարբեր է: Նման հետազոտություններ այժմ կատարվում են շատ երկրներում և, ո՞վ գիտե, կարող է պատահել, որ ապագայում ռադիոհաղորդումներ կտրվեն ոչ միայն մարդկանց, այլև ցորենի, պոմիդորի կամ բամբակի ցանքսերի համար:

## ԽԱՉԲԱՌ «ԱՐՎԵՍՏ»



ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. ՍՍՌՄ ժողովրդական նկարիչ-քանդակագործ: 2. Չափածո ստեղծագործություն: 3. ՍՍՌՄ ժողովրդական նկարիչ, Լենինյան մրցանակի լաուրեատ: 4. Հայ մեծանուն բանաստեղծ: 7. Հովհաննես Թումանյանի մանկական բանաստեղծություններից: 8. Հայկական ժողովրդական երաժշտական գործիք: 10. Սովետահայ ականավոր արձակագիր: 12. Կոմիտասի երգերից: 13. Սովետահայ ականավոր գրող: 16. «Թեհրան» վեպի գլխավոր հերոսներից:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

5. Հայ մեծ լուսավորիչ: 6. Հայ մեծանուն գրող: 9. Սովետահայ նշանավոր արձակագիր: 11. Հայկական ՍՍՌ ժողովրդական արտիստ: 14. Հայ ականավոր մանկագիր: 15. ՍՍՌՄ ժողովրդական արտիստ: 17. Սովետահայ տաղանդավոր գրող: 18. ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի:

Կազմեց՝ Շ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

digitised by A.R.A.R.@

41196

Ա
Ս
Ս

Ո
Վ
Ք
Ե
Ր

Ե
Ն

Ճիշտ լրացնելով բաց վանդակները, դուք կգտնեք այն նկարիչների անունները, որոնց ինքնանկարները պատկերված են այստեղ։

Նկ. և առաջարկ
ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@